## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11** ՆՈՅԵՄԲԵՐ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԱՄԵՆԱՆՎԻՐԱԿԱՆ ՏՈՆԸ

*Լրացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 57-րդ տարին: Բազում փորձություններ հաղթահարած, հերոսական պայքարի բովով անցած սովետական բազմազգ ժողովուրդն աշխատանքային աննախադեպ սխրանքներով ու փայլուն նվաճումներով է նշանավորում իր վերածննդի փառապանծ տարեդարձը: Կես դարից քիչ ավելի ժամանակահատվածի յուրաքանչյուր տարին կարևոր ուղենիշ է եղել պատմության մեջ առաջին հաղթական պրոլետարական հեղափոխության իդեալների իրականացման համար, ավելի վառ է դրսևորել նրա համաշխարհային պատմական նշանակությունը:*

*Մեծ Հոկտեմբերը հանդիսացավ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման ու սրման ամենացայտուն ու բնորոշ արտահայտությունը: Փշրելով իմպերիալիզմի շղթան և ստեղծելով սոցիալիստական հասարակարգ կառուցելու իրական հնարավորություններ՝ Հոկտեմբերյան հեղափոխությունը ազդարարեց մարդկության պատմության նոր դարաշրջանը, շահագործման բոլոր ձևերի վերացման, կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը: Այն հատկանշական է հեղափոխական, քաղաքական ու պատմական մեծագործություններով, որոնք վճռական ազդեցություն գործեցին աշխարհի սոցիալ-քաղաքական կյանքի վրա, արմատապես փոխեցին այն:*

*Շվեյցարիայի աշխատանքի կուսակցության նախագահ Ժան Վենսանը «Վուա ուվրիեր» թերթում կուսակցության ստեղծման 30-ամյակի առթիվ գրել է. «Մենք երջանիկ ենք և հպարտ, որ գտնվում ենք կոմունիստական ու բանվորական շարժման միասնական ու հզոր շարքերում, շարժում, որը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո վերափոխեց աշխարհի դեմքը և շարունակում է այդ պրոցեսը»:*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի արգասիքը եղան պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը մեր երկրում, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն ու ամրապնդումը, գաղութատիրության հիմքերի փլուզումը, անկախ ազգային պետությունների ստեղծումը: Դրական այդ տեղաշարժերն էլ մեծ Հոկտեմբերով սկսված նոր դարաշրջանի մեծագործություններն են:*

***

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մեծագույն նշանակություն ունեցավ Սովետական Միության ժողովուրդների ճակատագրում, վերջ տվեց ոչ-ռուս ազգությունների ճնշմանն ու իրավազրկությանը, նրանց ազատագրեց ցարական ինքնակալության լծից: Ինչպես պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինն էր ասում, Հոկտեմբերյան հեղափոխությունը խորտակեց բոլոր հին արգելքները, ջարդեց հնացած շղթաները, դուրս բերեց աշխատավորներին նոր կյանքի* ինքնուրույն *ստեղծագործության ճանապարհը (տե՛ս, Երկեր, հ. 26, էջ 498):*

*Մեծ Հոկտեմբերի հաղթանակի և կոմունիստական կուսակցության իմաստուն քաղաքականության շնորհիվ մեր երկրում հաջողությամբ իրականացավ ազգային հարցի լենինյան ծրագիրը: Ցարական Ռուսաստանի նախկինում հետամնաց ծայրամասերում ծնունդ առան սովետական հանրապետություններ, որոնք վճռական քայլեր արեցին իրենց տնտեսական ու կուլտուրական առաջընթացի ճանապարհին, դարձան ծաղկող ու բարգավաճող երկրներ և այժմ շարունակում են անշեղ վերելք ապրել:*

Միութենական հանրապետությունների աննախադեպ վերելքն արդասիք է մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության համար աշխատավորական զանգվածների մղած հերոսական պայքարի, Սովետական Միության կոմկուսակցության և սովետական պետության վարած լենինյան ազգային ճիշտ քաղաքականության հետևողական կիրառման, մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամության ու եղբայրական փոխօգնության։ Խոսելով ազգային հանրապետությունների համակողմանի զարգացման խնդիրների մասին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում ասաց. «...կուսակցության քաղաքականության էությունն այն է, որ մշտապես հաշվի առնվեն թե՛ մեր ամբողջ Միության ընդհանուր շահերը և թե՛ նրա մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 100)։

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության էությունը, ՍՍՀՄ ժողովուրդների փոխօգնությունն ու համագործակցությունն ավելի որոշակի են դրսևորվում այսօր, երբ մեր երկրի աշխատավորները բուռն խանդավառությամբ տոնում են մեծ Հոկտեմբերի 57-րդ տարեդարձը, եղբայրական Մոլդավիայի, Ուզբեկստանի, Տաջիկստանի, Կիրգիզիայի ու Թուրքմենիայի վերածննդի կեսդարյա հոբելյանը։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության փառապանծ տարեդարձը ո՛չ միայն սովետական բազմազգ ժողովրդի, այլև սոցիալիստական բոլոր երկրների ու կապիտալիստական աշխարհի աշխատավորական հոծ զանգվածների տոնն է։ Ահա թե ինչու ամեն տարի, սովետական ժողովրդի հետ միասին, պատմական այդ տոնը խանդավառությամբ են նշում նաև նրանք։

Հոկտեմբերյան հեղափոխությունն առաջ մղեց համաշխարհային պատմության ամբողջ ընթացքը։ Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ նրա հիմնական օրինաչափություններն անխուսափելի են ամեն մի երկրի սոցիալիստական հեղափոխության ժամանակ։ Առաջին հերթին, սոցիալիստական հեղաշրջումն անհնարին է առանց պրոլետարիատի դիկտատուրայի՝ բանվոր դասակարգի ու գյուղացիության առանձնահատուկ դաշինքի։ «Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի անհրաժեշտ պայմանը... հանդիսանում է աշխատավոր և շահագործվող գյուղացիության դաշինքը բանվոր դասակարգի՝ պրոլետարիատի հետ բոլոր առաջավոր երկրներում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 394)։

Մեր կուսակցությունը բազմիցս նշել է, որ սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսության հիմնական դրույթները կիրառելի են բոլոր երկրներում։ Դրա վկայությունը սոցիալիստական պետությունների կազմավորումն է աշխարհի բոլոր ծայրերում։ «Այժմ, — ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կազմող պետություններում ամուր կերպով հաստատված սոցիալիստական հասարակարգը կապիտալիզմի հետ պատմական հակամարտության մեջ ապացուցեց իր կենսական մեծ ուժը։— Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմվելն ու ամրապնդումը հանդիսացավ պատմական առաջադիմության հզոր արագացուցիչ, առաջադիմություն, որի սկիզբը դրեց մեծ Հոկտեմբերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 6)։

Այս տարի Բուլղարիան, Լեհաստանը, Ռումինիան նշեցին իրենց վերածննդի 30-ամյակը, իսկ Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը՝ կազմավորման 25-ամյակը։ Եվ ամենուրեք շեշտում էին այն օրգանական կապը, որ կա Հոկտեմբերյան հեղափոխության ու այդ երկրների սոցիալիստական վերափոխման միջև, այն բարերար ազդեցությունը, որ թողել են առաջին պրոլետարական հաղթական հեղափոխությունն ու սոցիալիստական երկիրը։ Նրանց համար Սովետական Միությունը վաղուց ի վեր դարձել է ձգողական ուժ, պայքարի ու խիզախումների օրինակ։

Սոցիալիստական երկրների կոմունիստները օգտագործում են հաղթական



հեղափոխություն իրականացրած Սովետական Միության կոմունիստական կուսակցության ու սովետական ժողովրդի պատմական փորձը և դրա շնորհիվ հասնում նորանոր հաջողությունների տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր ասպարեզներում։

Թե՛ մեր երկրում, թե՛ սոցիալիստական մյուս երկրներում շեշտվում է այն իրողությունը, որ եղբայրական պետություններին միավորում են համանման շահերը, իդեալների ու նպատակների միասնությունը։ Նրանց համագործակցությունն ու փոխօգնությունը բազմապատկում են յուրաքանչյուր երկրի ժողովրդական զանգվածների ստեղծագործական ուժերը, ամրապնդում տնտեսական ինտեգրացիան, ընդլայնում զարգացման հեռանկարները։

Սոցիալիստական համագործակցությունը յուրահատուկ, մարդկության պատմությանը մինչև այժմ անծանոթ այնպիսի դաշինք է, որը հիմնված է այդ երկրների աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության վրա։ Այդ դաշինքի ամրապնդման գործում վճռական դերը կատարում են բանվոր դասակարգն ու նրա բազմափորձ ավանգարդը՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունները և առաջին հերթին՝ Սովետական Միությունը։

Տոնելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 57-րդ տարեդարձը՝ սոցիալիզմի սիստեմի երկրների ժողովուրդները և կոմունիստական ու բանվորական կուսակցությունները ավելի են ամրապնդում իրենց եղբայրական փոխշահավետ համագործակցությունը, անշեղորեն իրականացնում մեծ Հոկտեմբերի վսեմ իդեալները։

***

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո՝ երկու սիստեմների պետությունների միջև խաղաղ գոյակցության հաստատումը դարձավ կոմկուսակցության ծրագրային խնդիրը։ Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ Հոկտեմբերի նվաճումներն ամրապնդելու և սոցիալիզմի վերջնական հաղթանակն ապահովելու համար չափազանց կարևոր են հաշտությունն ու խաղաղությունը։

Լենինյան իմաստուն ցուցումներին համապատասխան, Սովետական Միության կոմկուսակցությունն ու կառավարությունը իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը հակադրում են խաղաղության ակտիվ պաշտպանության և միջազգային անվտանգության ամրապնդման քաղաքականությունը։ Աշխարհի ժողովուրդները Սովետական Միությունը համարում են խաղաղության հուսալի պատվար։ Լենինգրադի «Կիրովյան գործարան» միավորումում 1974 թ. սեպտեմբերի 27-ին տեղի ունեցած սովետա-հունգարական բարեկամության միտինգում Հունգարիայի բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար Յանոշ Կադարն ասաց. «Սոցիալիզմ կառուցող հունգար ժողովրդի համար ուժի աղբյուր և հպարտության առարկա է այն բանի գիտակցումը, որ իր բարեկամն ու դաշնակիցն է սոցիալիստական հեղափոխության դրոշակիր, խաղաղության պատվար Սովետական Միությունը, կոմունիզմ կառուցող սովետական մեծ ժողովուրդը»։

Լենինյան արտաքին քաղաքականության սկզբունքները արտացոլվեցին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում, մեր կուսակցության Կենտկոմի փաստաթղթերում։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին ԳԴՀ-ի բարձրագույն պարգևը՝ Կարլ Մարքսի շքանշանը հանձնելու արարողության ժամանակ ԳՍՄԿ Կենտկոմի առաջին քարտուղար Է. Հոնեկերն ասաց. «Այսօր բոլոր երկրներում միլիոնավոր մարդիկ զգում են, թե ինչպիսի խոր ազդակներ են բխում ՍՄԿԿ XXIV համագումարից և մեր մոլորակի խաղաղության ու առաջադիմության վրա ինչպիսի մեծ ազդեցություն են գործում սովետական ժողովրդի հետագա առաջընթացը կոմունիզմի ուղիով, ինչպես նաև ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության մեծ ծրագիրը»։

Խաղաղության ամրապնդման համար Սովետական Միության գործադրած համառ ջանքերն արդյունավետ եղան նաև այս տարի։ Մեր երկիրն իր վերա-

ծննդի 57-րդ տարելիցը դիմավորեց այդ ասպարեզում ձեռք բերած նշանակալի հաջողություններով։ Սովետական Միության արտաքին քաղաքականության խնդիրները պատշաճ վերլուծվեցին Լ. Ի. Բրեժնևի՝ ԳԴՀ-ի կազմավորման 25-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում։ Նա ասաց, որ լենինյան միջազգային քաղաքականության բարձրագույն նպատակն է «...ապահովել սոցիալական պրոգրեսը խաղաղության և ժողովուրդների անվտանգության պայմաններում»։ Սովետական Միության միջազգային քաղաքականության ամենաուշագրավ երևույթը ԱՄՆ-ի հետ հարաբերությունների զգալի նորմալացումն է։ Երկու մեծ տերությունները հաստատուն քայլեր արեցին խաղաղության գործի ամրապնդման ճանապարհին։ Սովետա-ամերիկյան բանակցությունների դրական արդյունքները լայն արձագանք գտան աշխարհի բոլոր անկյուններում։ Այդ հարաբերությունների բարելավումն ու նորմալացումը վճռական գործոն են կայուն խաղաղության հաստատման համար։

Սովետական Միությունն ամրապնդել է խաղաղ գոյակցության հարաբերությունները, շահավետ կապեր հաստատել նաև կապիտալիստական մյուս երկրների հետ։ Նա ջանքեր է գործադրում Եվրոպայում, Մերձավոր Արևելքում և աշխարհի այլ մասերում անվտանգության ու խաղաղ համագործակցության ամուր հիմքեր դնելու համար։ Սովետական Միության կոմկուսակցությունը և սովետական կառավարությունը խաղաղության ամրապնդման նպատակով ծավալած անդուլ պայքարը համարում են իրենց գործունեության ծրագիրը։ Այդ քաղաքականությունը բխում է սոցիալիստական հեղափոխության ու նրա ստեղծած նոր հասարակարգի էությունից ու խնդիրներից։ Սովետական ժողովուրդը Հոկտեմբերյան հեղափոխության 57-րդ տարեդարձը տոնեց՝ նշանաբան ունենալով կայուն խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունը։

***

Ամեն տարի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության տոնը դառնում է ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած փայլուն նվաճումների, նրանց ստեղծագործական ուժերի ստուգատեսի առիթ։ Այդպիսին է նաև 57-րդ տարելիցը։ Երկրի աշխատավորական կոլեկտիվներն իններորդ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարին սկսեցին իրենց ուժերի ու ջանքերի գերագույն լարումով, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրները պատվով լուծելու անկոտրում կամքով ու անսասան վճռականությամբ։

Կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղած ՍՄԿԿ Կենտկոմի 1974 թ. դիմումն ու արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին կուսակցության և կառավարության որոշումները նոր խթան հանդիսացան սովետական մարդկանց աշխատանքային խիզախումների համար։ Նվազ ծախսումներով առավել շատ արտադրանք թողարկելու և հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության կոչին նրանք արձագանքեցին սոցիալիստական բարձր պարտավորություններով, պետական առաջադրանքների հաջող կատարմամբ, նոր ռեզերվների հայտաբերմամբ ու օգտագործմամբ։ Առաջավոր կոլեկտիվները հանդես եկան հայրենասիրական նախաձեռնություններով, ընդունեցին հանդիպական լարված պլաններ։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության 1974 թ. պլանով նախատեսվում է բարձրացնել արդյունաբերության մի շարք ճյուղերի զարգացման տեմպերը, ավելի ամրապնդել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, արագացնել տեխնիկական առաջընթացը, ապահովել բնակչության կենսամակարդակի աճը, 1971—1973 թթ. համեմատությամբ բարելավել էկոնոմիկայի զարգացման ցուցանիշները։ Աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ այս տարի կստացվի արդյունաբերական արտադրանքի ինը տասներորդը, կապահովվի շինմոնտաժային աշխատանքների, գյուղատնտեսական մթերքների և



երկաթուղային տրանսպորտի փոխադրումների ամբողջ աճը։ Ազգային եկամտի աճը, 1971—1973 թթ. 5,2 տոկոսի դիմաց, կկազմի 6,5 տոկոս։

Հնգամյակի որոշիչ տարվա նախնական արդյունքները վկայում են, որ այդ խնդիրները կլուծվեն մեծ հաջողությամբ։ Ուրախալի է, որ Սովետական Միության աշխատավորները, գործարար մրցություն ծավալելով ի պատիվ մեծ Հոկտեմբերի 57-րդ տարեդարձի, բազմապատկեցին իրենց ձեռքբերումները։ ՍՍՀՄ կենտվիճվարչության հաղորդագրությունից երևում է, որ 1974 թվականի անցած երեք եռամսյակներում նշանակալիորեն արագացել են արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, բարձրացել է հանրային արտադրության արդյունավետությունը։ Պլանից ավելի իրացվել է 5,5 մլրդ ռուբլու արտադրանք, արդյունաբերական արտադրանքի աճը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, կազմել է 8,2 տոկոս, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6,7 տոկոսով։

Արտադրության տեխնիկական կատարելագործման և ինտենսիվացման շնորհիվ բարելավվել են ձեռնարկությունների աշխատանքի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել և սկսել են արտադրել ավելի քան 2.000 նոր արտադրատեսակներ։ 1974 թ. հոկտեմբերի 1-ին արդեն 21 հազար արտադրատեսակ ունեն պետական որականիշ։

Մեծ Հոկտեմբերի տոնը արտադրական հաջողություններով նշանավորեցին նաև գյուղատնտեսության, տրանսպորտի, կապի և շինարարության բնագավառների աշխատողները։ Իրականացվել են գյուղատնտեսական արտադրության հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման բազում միջոցառումներ, նշանակալիորեն ավելացել են մթերքների արտադրությունը, աճել կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության կարևորագույն համաշխարհային նշանակությունն այն է, որ նա ժողովրդին տվեց ո՛չ միայն քաղաքական իրավունքներ, այլև ունևոր կյանքի հոգևոր և նյութական պայմաններ։ Այս իրողությունն իր արտահայտությունն է գտնում նաև ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում և դրանց կատարման արդյունքներում։ Այս տարի ևս հաջողությամբ են իրականացվում ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման համար ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված միջոցառումները, շարունակվում է բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձի բարձրացումը, աճել են նրանց ամսական միջին վաստակը և կոլտնտեսականների վարձատրությունը։ Սպառման հանրային ֆոնդերից բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները կազմել են մոտավորապես 40 մլրդ ռուբլի կամ նախորդ տարվա համեմատությամբ 6,5 տոկոսով ավելի։ Անցած ինն ամսում ձեռնարկություններն ու կազմակերպությունները և բնակ-շինարարական կոոպերատիվները շահագործման են հանձնել 600.000 նոր բնակարան՝ 27,7 մլն քմ ընդհանուր (օգտակար) մակերեսով։ Պետական կապիտալ ներդրումների հաշվին շահագործման են հանձնվել մեծ քանակությամբ հանրակրթական դպրոցներ, նախադպրոցական հիմնարկություններ, հիվանդանոցներ ու պոլիկլինիկաներ, մշակույթի օջախներ։

Ժողովրդական տնտեսության և սոցիալ-քաղաքական զարգացման բնագավառներում ձեռք բերած փայլուն նվաճումների աղբյուրը կոմունիստական կուսակցության լենինյան տնտեսական քաղաքականությունն է, սովետական մարդկանց բարոյական և քաղաքական բարձր գիտակցականությունը, հերոսական տոկունությունը, ստեղծարար անդադրում աշխատանքը։ Այս ամենի օրինակը տալիս է նաև Սովետական Հայաստանը, որը նոյեմբերի 29-ին նշում է իր վերածննդի 54-ամյակը։ Հայաստանում սովետների հաղթանակը մեծ Հոկտեմբերի օրգանական շարունակությունն էր, նրա անմիջական արդյունքը։ Նոյեմբեր ամիսը կրկնակի տոնական է մեր հանրապետության աշխատավոր-

ների համար: Ահա թե ինչու միանգամայն բնական է, երբ նրանք արտադրական սխրանքներով նշանավորեցին այդ բերկրալի տարելիցները:

Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքում հայ ժողովուրդը կերտում է իր ներկան ու ապագան, նրանց հետ կենսագործում ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումները, բազմապատկում մեր երկրի հարստությունը, ստեղծում կոմունիզմի նյութատեխնիկական բազա: Այդ ամենի վկայությունն ընթացիկ տնտեսական տարվա անցած ժամանակաշրջանի հաջողություններն են, պետական առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման գոհացուցիչ արդյունքները: Անցած ինն ամսում Հայաստանի արդյունաբերության աշխատողները պետական պլանից դուրս իրացրել են 68,8 մլն ռուբլու արտադրանք, կոլտնտեսականները և սովխոզների բանվորները կատարել են գյուղատնտեսական շատ մթերքների արտադրության ու վաճառքի առաջադրանքները: Հոկտեմբերյան տոնի նախօրյակին արտադրության ու մթերումների տարեկան պլանը կատարելու մասին զեկույցներ տվեցին էջմիածնի շրջանի բանջարաբույծները, Մասիսի շրջանի խաղողագործները, Կալինինոյի շրջանի կարտոֆիլագործները: Արդյունաբերական ձեռնարկությունների հազարավոր բանվորներ մեծ Հոկտեմբերի և նոյեմբերյան տոների նախօրյակին կատարեցին հնգամյակի անհատական պլանները:

***

Մեծ Հոկտեմբերի տոնը ամենամեծ ու նշանավոր իրադարձությունն է սովետական ժողովրդի կյանքում: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 57-րդ տարեդարձի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի կոչերում սևեռված են մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների աշխատավորների կոնկրետ խնդիրները: Կուսակցության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ պարտքն է՝ գլխավորել աշխատավորական կոլեկտիվներին համակած խանդավառությունը, մոբիլիզացնել նրանց ուժերն ու եռանդը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներից բխող այդ խնդիրները պատվով լուծելու համար: Հարկավոր է ըստ ամենայնի բարձրացնել աշխատավորական զանգվածների քաղաքական ու արտադրական ակտիվությունը, զարգացնել նրանց նախաձեռնությունը, նրանց ստեղծագործական ուժերն ուղղել մեր հայրենիքի տնտեսական ու կուլտուրական առաջընթացին:

Մեծ Հոկտեմբերի դրոշը վեր պարզած, նրա նշած լուսավոր ուղիով Սովետական Միության աշխատավորները, կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, շարունակում են իրենց հաղթարշավը՝ հանուն աշխարհում առաջին սոցիալիստական հեղափոխության նվաճումների ամրապնդման, նրա իդեալների իրականացման, հանուն նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման:

# ԱՐՄԱՏԱՊԵՍ ԲԱՐԵԼԱՎԵԼ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիստական շինարարության արդի փուլում, երբ հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում տեղի են ունենում խոր փոփոխություններ, մեծ և պատվավոր դեր է վերապահված գաղափարական բնագավառի աշխատողներին: «Մեր գործը՝ կոմունիզմի կառուցումը,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտկոմի տված զեկուցման մեջ,— անկարելի է առաջ շարժել առանց իր՝ մարդու բազմակողմանի զարգացման: Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմը անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութատեխնիկական համապատասխան բազայի»:

Կոմունիզմի հոյակապ շենքի կառուցումը հաջողությամբ կիրագործվի այնքանով, որքանով նրա կառուցողները՝ սովետական մարդիկ, կըմբռնեն հասարակական զարգացման ուղղությունը, պարզորոշ կգծվեն երկրի առջև ծառացած խնդիրները և այն ճանապարհը, որով մենք ընթանում ենք: Ահա թե ինչու մեր օրերում, երբ տարբեր սոցիալական կարգ ունեցող երկրների միջև խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման հետ միասին սրվում է գաղափարական պայքարը, ժողովրդական մասսաների կոմունիստական դաստիարակության խնդիրները մղվում են առաջին պլան: Մեր կուսակցությունը գաղափարական աշխատանքում ղեկավարվում է այն հայտնի դրույթով, որ պատմության կերտողները ժողովրդական մասսաներն են, որ գաղափարները տիրապետելով մասսաներին՝ դառնում են նյութական ուժ, իսկ դա նրանց հաղորդում է ստեղծագործական եռանդ, ակտիվ գիտակցական աշխատանքի վիթխարի ձգտում:

Գաղափարական աշխատանքը կոմունիստական շինարարության առաջավոր տեղամասն է: Կոմունիստական գաղափարախոսությունը հզոր խթան է մոբիլիզացնելու աշխատավորական մասսաներին ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման ծրագրային խնդիրները հաջողությամբ լուծելու համար, ամենազորեղ զենքն է՝ միջազգային իմպերիալիզմի ռեակցիոն գաղափարաբանության, օպորտունիզմի և ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում: Կուսակցության գաղափարական-դաստիարակչական ողջ աշխատանքի միջուկը,— նշեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— աշխատավոր լայն մասսաների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակությունը՝ մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով:

Այս գործի առաջամարտիկները գաղափարախոսական ճակատամասի կադրերն են՝ բազմահազար պրոպագանդիստների և ագիտատորների այն բանակը, որոնք ամենօրյա անդուլ աշխատանքով մասսաներին զինում են մարքս-լենինյան գաղափարներով, իրագործում մշտական կապը կուսակցության և ժողովրդի միջև, կուսակցության որոշումները դարձնում նրանց սեփականությունը:

Կուսակցությունը հույժ կարևոր է համարում այն հանգամանքը, որ ինչպես

գաղափարական ճակատամասի կոմունիստները, այնպես և աշխատավոր մասսաները խորապես տիրապետեն մարքսիստական-լենինյան ուսմունքին, կարողանան հմտորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների նկատմամբ, ճիշտ գնահատեն դրանք և գործնականում ավելի կատարելագործեն լենինիզմի վեհ սկզբունքների իրագործման մեթոդներն ու եղանակները:

Ժողովրդական մասսաների հետ տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը և ներգործության արդյունավետությունը միշտ էլ գտնվել են կուսակցության ուշադրության կենտրոնում: Այդ է վկայում վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշումը՝ «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության մեջ գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքի մասին»: Ծրագրային այդ փաստաթղթում տրված են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման ոլորտում Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության գործունեության արժանի գնահատականը և բազմակողմանի վերլուծությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը նշեց, որ Բելոռուսիայի կոմկուսակցության Կենտկոմը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով, մեծ աշխատանք է կատարում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության մարզում, գաղափարական ֆրոնտում առաջ քաշելով նախաձեռնող, հասունացած, աշխատանքի փորձ և անհրաժեշտ տեսական ու մասնագիտական պատրաստականություն ունեցող կոմունիստների: Բելոռուսիայի կուսկազմակերպությունը հմտորեն է նպատակամղում գաղափարական կադրերի ջանքերը բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության քաղաքական ակտիվության և աշխատանքային նախաձեռնության զարգացմանը, սոցիալիստական մրցության ծավալմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, իններորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը: Սիստեմատիկ աշխատանք է տարվում կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության պարզաբանման, սովետական հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի, կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի, կոմունիստական գաղափարների պրոպագանդման, ինչպես նաև նրանց կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի պանծալի մարտական և աշխատանքային տրադիցիաներով դաստիարակելու ասպարեզում: Կուսակցության այս ողջ գործունեությանն անմիջականորեն մասնակցում են կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական ղեկավար աշխատողները:

Կուսակցական կազմակերպությունը մշտական հոգատարություն է ցուցաբերում հոգևոր արժեքներ ստեղծող մտավորականության նկատմամբ, որը նպաստում է ստեղծագործական միությունների համախմբմանը, մարդու հոգևոր աշխարհի ձևավորման գործում նրանց դերի բարձրացմանը:

Վերջին տարիներին ԲՍՍՀ գրողներն ու արվեստագետները ստեղծել են սովետական մարդկանց բարոյական բարձր հատկանիշները դրսևորող, Հայրենական մեծ պատերազմում մեր ժողովուրդների պատմական հերոսությունն արտացոլող տաղանդավոր երկեր:

Բելոռուսիայի կուսկազմակերպության մեջ ստեղծվում է գաղափարական կադրերի հետ տարվող աշխատանքի մտածված համակարգ. սիստեմատիկորեն է տարվում մարքս-լենինյան ուսուցումը, գործում են կուսակցության տեսությունն ու քաղաքականությունը, միջազգային հարաբերությունները, գաղափարական աշխատանքի տեսական հիմքերն ու մեթոդներն ուսումնասիրող խմբակներ: Մեծ թվով պրոպագանդիստներ, դասախոսներ, լրագրողներ ընդգրկված են մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում:

Գաղափարական աշխատանքի արդյունավետությանն այստեղ նպաստում է և այն, որ պրոպագանդիստական կադրերին պարբերաբար ինֆորմացիա է տրվում կուսակցության արտաքին և ներքին քաղաքականության, ժողովրդական տնտեսության, հասարակական կյանքի, կուսակցական և պետական օրգանների գործունեության կարևոր հարցերի վերաբերյալ. կուսակցության Կենտկոմը, մարզկոմները լրագրողների հետ սիստեմատիկաբար, հաջող վարում են պրես-կոնֆերանսներ, կազմակերպում խմբագրի օր, թողարկում տեղե-



կատու բյուլետեններ կազմակերպական-քաղաքական աշխատանքի մասին: Գաղափարական կադրերին օգնելու նպատակով հրատարակվում են հատուկ բյուլետեններ, որոնք մերկացնում են բուրժուական բարքերն ու կապիտալիստական սիստեմի արատները:

Բելոռուսիայի կուսկազմակերպության գաղափարական աշխատանքի ուսանելի կողմն այն է, որ հանրապետությունում սոցիալական պրոցեսների և հանրային կարծիքի, աշխատավորների հասարակական և աշխատանքային ակտիվության բարձրացման ուղիների ուսումնասիրությունը խարսխված է գիտական հիմքերի վրա: Մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին և խոշոր հիմնարկ-ձեռնարկություններին կից ստեղծված են հատուկ խմբեր, որոնք ամփոփում են տեղերից ստացված ինֆորմացիան և համապատասխան հետևություններով ու երաշխավորություններով նյութերն ուղարկում են սկզբնական կազմակերպություններին:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն դրական գնահատելով այս բնագավառում Բելոռուսիայի կուսկազմակերպության կատարած աշխատանքը, միաժամանակ տեղի կոմունիստների ուշադրությունը բևեռեց գաղափարական աշխատանքում նկատվող թերությունների վրա:

Հասարակական կյանքի զարգացման արդի մակարդակը, կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները, միջազգային ոլորտում գաղափարական պայքարի սրությունը և բարդությունը նոր, ավելի բարձր պահանջներ են առաջադրում գաղափարական բնագավառի աշխատողներին: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն օրվա ամենագլխավոր խնդիրը համարում է գաղափարական աշխատանքի մակարդակի և աշխատավոր մասսաների վրա մեր գաղափարախոսության ներգործության արդյունավետության անշեղ բարձրացումը, տեսության և կոմունիստական շինարարության պրակտիկայի կապերի մշտական ամրապնդումը: Այս կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմը քննադատաբար գնահատեց Բելոռուսիայի կուսկազմակերպության մի շարք կոմիտեների գործունեությունը, որոնք բավարար ուշադրություն չեն դարձրել գաղափարական աշխատանքին, այդ ասպարեզում ձեռք բերված դրական փորձի ամփոփմանն ու տարածմանը, գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության հարցերում հանդես են բերել ոչ պատշաճ մոտեցում: Կադրերի պատրաստման և հրահանգավորման ընթացքում միշտ չէ, որ խելացի են զուգակցում գաղափարական-քաղաքական գործունեության ամենօրյա խնդիրներն աշխատավորներին բարոյական վսեմ իդեալներով տոգորելու, նրանց կոմունիստական համոզմունքներ ներարկելու հեռանկարային հարցերի հետ: ՍՄԿԿ Կենտկոմը կոնկրետ միջոցառումներ է նշել Բելոռուսիայի կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքների հետագա բարելավման, կադրերի ընտրության, դաստիարակության և տեղաբաշխման նպատակով:

Համակուսակցական նշանակություն ունեցող այդ փաստաթղթում արված հետևություններն ու հանձնարարականներն սկզբունքային նշանակություն ունեն յուրաքանչյուր կուսկազմակերպության համար, փաստաթուղթ, որը կոնկրետացնում է գաղափարական ճակատի տարբեր բնագավառների գործունեության ուղղությունը, կողմնորոշում մարդկանց դաստիարակությամբ զբաղվող ստվարաթիվ աշխատողներին, մոբիլիզացնում նրանց ուժերը՝ գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման, օրվա պահանջների մակարդակին հասցնելու նպատակով:

Գաղափարական աշխատանքի արդյունավետությունը մարդկանց բարձր գիտակցականությունն է, որն առաջին հերթին արտահայտվում է կուսակցության առաջադրած սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման ոլորտում նրանց ցուցաբերած մասնակցությամբ: Եվ այդ գործում, ինչպես նշված է Կենտկոմի որոշման մեջ, վիթխարի է գաղափարական կադրերի դերը, որոնց ընտրությունն ու դաստիարակությունը կուսակցական ղեկավարության գաղափարական գործունեության կարևորագույն հարցն է: Կադրերի ընտրությամբ, նրանց պատրաստականությամբ և ուժերի ճիշտ օգտագործմամբ է

պայմանավորված գաղափարական աշխատանքի մակարդակը: Կենտկոմի որոշումը ելնում է հենց այն բանից, որ գաղափարական կադրերը ձևավորվում և կոփվում են մշտական տեսական-գաղափարական աշխատանքի պրոցեսում: Այս առումով էլ Կենտկոմը գաղափարախոսական կադրերին առաջադրում է բարձր պահանջներ, որոնք պետք է դրվեն գաղափարական աշխատանքի, կադրերի ընտրության և դաստիարակության, վերապատրաստման և որակավորման բարձրացման, նրանց ամբողջ գործունեության հիմքում:

ՍՄԿԿ Կենտկոմի վերոհիշյալ որոշման առումով, Հայաստանի կուսակազմակերպությունները զգալի աշխատանք են կատարում գաղափարական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման, կադրերի հետ տարվող աշխատանքի ասպարեզում: Մեզ մոտ ևս առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում պրոպագանդիստների ընտրությանը և նրանց գաղափարական մակարդակի բարձրացմանը: Այսպես՝ հանրապետության գաղափարական ճակատում աշխատող պրոպագանդիստների 98 տոկոսն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն: Նրանց ճնշող մեծամասնությունը տեսական-քաղաքական պատշաճ պատրաստականություն և պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունեցող կոմունիստներ են: Պրոպագանդիստական աշխատանք են տանում նաև կուսակցական, սովետական ղեկավար աշխատողներ, ժողտնտեսության տարբեր բնագավառների ղեկավարներ, բուհերի դասախոսներ, գիտնականներ, գրողներ, ուսուցիչներ և այլ բնագավառի մտավորականներ:

Քաղաքական ուսուցման ընթացիկ տարում պրոպագանդիստական աշխատանքի են առաջ քաշվել երիտասարդ կադրեր, որոնց հետ կուսակցական կոմիտեները պետք է հետևողական աշխատանք տանեն նրանց տեսական և մասնագիտական գիտելիքների հարստացման, պրոպագանդիստական աշխատանքի արվեստին տիրապետելու նպատակով: Գաղափարական աշխատանքի համար շատ կարևոր է, որպեսզի այդ կադրերը կարողանան մարքսիզմ-լենինիզմի չափանիշներով գնահատել հասարակական երևույթները, պայքարեն սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի համար, հետևողականորեն մերկացնեն բուրժուական-ռևիզիոնիստական գաղափարախոսությունը, ճիշտ կողմնորոշվեն կուսակցության վարած ներքին և արտաքին քաղաքականության հարցերում, վարժ տիրապետեն մարքսիստական հայացքներ մշակելու լենինյան արվեստին, պրոպագանդիստական աշխատանքը դարձնեն համոզիչ, սովետական մարդկանց համակեն մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ իդեալների ավյունով:

Պրոպագանդիստական կադրերի տեսական-մասնագիտական մակարդակի բարձրացման ասպարեզում մեզ մոտ կատարվում է պլանավորված կոնկրետ աշխատանք: ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, հանրապետական քաղլուսատունը սիստեմատիկաբար հրավիրում են տեսական սեմինարներ, միջշրջանային և քաղաքային փնջային խորհրդակցություններ, գիտապրակտիկ կոնֆերանսներ, կուսակցական կոմիտեներին կից մշտապես գործում են տեսական սեմինարներ: Ամեն տարի պրոպագանդիստների համար կազմակերպվում են ամառային կարճատև դասընթացներ, ուր իրենց գիտելիքներն են հարստացնում պրոպագանդիստական աշխատանք կատարող 400-ից ավելի կոմունիստներ: Այս բոլոր միջոցառումներին դասախոսություններով ու զեկուցումներով հանդես են գալիս ղեկավար կուսակցական, սովետական, տնտեսական աշխատողներ, գիտության, կուլտուրայի, արվեստի ու գրականության ներկայացուցիչներ, բուհերի և գիտահետազոտական ինստիտուտների դասախոսներ ու գիտնականներ:

Գաղափարական աշխատանք կատարող կադրերի մի զգալի մասը կուսակցական կոմիտեների և կուսակցական սկզբնական կազմակերպությունների քարտուղարներն են, ինչպես նաև գաղափարական աշխատանք կատարող այլ ընկերներ, որոնց աշխատանքի որակով է պայմանավորվում աշխատավորության դաստիարակության խնդիրների լուծումը:



Գաղափարախոսական բնագավառի ղեկավար ընկերների մարքս-լենինյան տեսության և տնտեսագիտական ուսուցումը կազմակերպվում է քաղկոմշրջկոմներին կից գործող կուսակցական ակտիվի դպրոցներում, տեսական սեմինարներում, ՀԿԿ Կենտկոմին կից մշտական գործող ՍՄԿԿ ԿԿ Մոսկվայի և Բաքվի մեկամսյա դասընթացներում, ՍՄԿԿ Կենտկոմի բարձրագույն կուսակցական դպրոցի հեռակա բաժնում, Երևանի և Լենինականի մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, հանրապետական մասշտաբով հրավիրվող գիտական սեմինարներում, տեսական և գիտապրակտիկ կոնֆերանսներում, առաջավոր փորձի փոխանակման փնջային սեմինար խորհրդակցություններում:

Սակայն պրոպագանդիստական կադրերի ուսուցումը և վերապատրաստումը բոլոր օղակներում չէ, որ ընթանում է բարձր մակարդակով: Մարքսիզմ-լենինիզմի համալսարանների ունկնդիրների որակական կազմը զգալի չափով չի համապատասխանում այդ ուսումնական հաստատությունների գաղափարական պրոֆիլին: Առայժմ այդ համալսարաններում անբավարար է ուսման վիճակը, մեծ չափերի են հասնում մաղումները, իսկ կուսակցության քաղկոմշրջկոմները և սկզբնական կազմակերպությունները անհրաժեշտ հետևողականությամբ և պահանջկոտությամբ չեն միջամտում ուսման ընթացքի նորմալացման, կարգապահության և ուսման առաջադիմության բարձրացման գործին:

Կուսակցական ուսուցման սիստեմում կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների ուշադրությունն այժմ բևեռված է մարքս-լենինյան տեսական ժառանգության, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած կուսակցության հանգուցային պրոբլեմների, ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումների դրույթների, իններորդ հնգամյակի խնդիրների լուծման համար կուսակցության քաղաքական գործունեության ուսումնասիրության վրա: Անհրաժեշտ է հիշատակել, որ հանրապետության գրեթե բոլոր քաղաքների ու շրջանների, հատկապես Երևանի, Լենինականի, Կիրովականի, Իջևանի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Հրազդանի, Թումանյանի, Ստեփանավանի, Կամոյի կուսկազմակերպությունների զգալի մասում քաղդպրոցների և տեսական սեմինարների պարապմունքների մակարդակը ցույց է տալիս, որ ավելի է բարձրացել ունկնդիրների հետաքրքրասիրությունն ու պատասխանատվությունը մարքս-լենինյան տեսության ուսումնասիրության նկատմամբ:

Գաղափարական կադրերի հետ տարվող աշխատանքի և աշխատավորների քաղաքական ուսուցման առաջավոր ձևեր ու մեթոդներ են մշակվել Կիրովականի քաղաքային կոմիտեում: Այստեղ հատուկ ուշադրություն է նվիրվում պրոպագանդիստների ընտրության և դաստիարակության գործին, գրեթե բոլոր պրոպագանդիստներն ունեն բարձրագույն կրթություն, նրանց մեկ երրորդից ավելին ձեռնարկությունների դիրեկտորներ են, գլխավոր ինժեներներ և կազմակերպությունների քարտուղարներ: Գաղափարական կադրերի համար քաղկոմը պարբերաբար անց է կացնում շերտավորված սեմինար պարապմունքներ, տեսական և գիտապրակտիկ կոնֆերանսներ, գիտական սեմինարներ, կազմակերպում հանդիպումներ քաղաքի կուսակցական, սովետական ղեկավար աշխատողների հետ, ուր անհրաժեշտ ինֆորմացիա է տրվում ժողովրդական տնտեսության տարբեր հարցերի շուրջը, հանդիպումներ են ունենում նաև հանրապետության անվանի գիտնականների, գրողների, մշակույթի և արվեստի գործիչների հետ:

Քաղաքական ուսուցման սիստեմում կատարվող դրական աշխատանքի հետ միասին կան բացեր ու թերություններ. մի շարք կուսկազմակերպություններում մեծ թիվ են կազմում քաղուսուցման պարապմունքներից բացակայող կոմունիստները, քիչ չեն այն դեպքերը, երբ կոմունիստ ունկնդիրների անկարգապահության պատճառով խափանվում են պարապմունքները, դեռևս ցածր է ունկնդիրների ակտիվությունն ուսումնասիրվող հարցերի քննարկման ժամանակ, չի հաղթահարված ուսման և կյանքի միջև եղած կտրվածությունը, ուսումնասիրվող տեսական նյութը չի կապվում հիմնարկ-ձեռնարկությունների կոնկրետ խնդիրներին:

Կենտկոմի հիշարժան որոշումը պարտավորեցնում է կուսկազմակերպություններին՝ կատարելագործել քաղուսուցման սիստեմի ձևերն ու մեթոդները, գաղափարական աշխատանքը կապել կյանքի հետ, բարձրացնել պրոպագանդիստների տեսական պատրաստականությունը, տարածել տեսական գիտելիքների պրոպագանդման առաջավոր փորձը, մասսաներին տոգորել կուսակցության ծրագրի ու որոշումների ոգով, մոբիլիզացնել նրանց հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար:

Գաղափարական կադրերի մի հսկա բանակ են կազմում քաղինֆորմատորներն ու ագիտատորները, որոնք անմիջականորեն կապի ու շփման մեջ են աշխատավորական լայն խավերի հետ: Գործերին կոնկրետ քաջատեղյակ լինելը բարձրացնում է նրանց խոսքի և զրույցի նշանակությունն ու ազդեցությունը: Լավ քաղինֆորմատորի, լավ ագիտատորի աշխատանքը կարևոր ներդրում է մասսաների կոմունիստական դաստիարակության գործում:

Գաղափարական կադրերը միշտ գտնվում են պայքարի առաջին շարքերում: Մեր բոլոր հաջողություններում և նվաճումներում ակնառու են նրանց ներդրումները, նրանց ամենօրյա անդուլ աշխատանքի պտուղները:

Կուսկազմակերպությունները պետք է մշտական հոգատարությամբ շրջապատեն գաղափարական կադրերին, նրանց բեղմնավոր աշխատանքի համար ստեղծեն նպաստավոր պայմաններ, պաշտպանեն նրանց նախաձեռնությունները, լենինյան հետևողականություն և սկզբունքայնություն հանդես բերեն նրանց կազմի ընտրության և դաստիարակության, հեղինակության բարձրացման, ուսման կատարելագործման հարցերի բնագավառում:

Վ. Ի. Լենինը պահանջում էր կուսակցական աշխատողներից՝ կյանքը ճանաչել խորությամբ ու բազմակողմանի, կարողանալ ցանկացած հարցում կողմնորոշվել անսխալ, ուզած պահին կռահել մասսաների տրամադրությունը, իրական պահանջմունքները, ձգտումներն ու խոհերը, կարողանալ, առանց կեղծ իդեալացման ստվերի, որոշել նրանց գիտակցության աստիճանը, նրանց վրա՝ հնի այս կամ այն նախապաշարմունքի ու մնացուկի ազդեցության ուժը:

Գաղափարական կադրերի, ինչպես նաև բոլոր կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, մեծ գործ է, և ոչ միայն իր մասշտաբներով, այլև ամենից առաջ իր գաղափարական-քաղաքական նշանակությամբ: Անհրաժեշտ է օր-օրի բարելավել քաղաքական ուսուցումը, այն սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրներին:

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ




# ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՄԲ ՀԱՎԵՐԺ ԶՈԴՎԱԾ

**Ն. Վ. ՄԵՐԵՆԻՇՉԵՎ**
Մոլդավիայի կոմկուսակցության
Կենտկոմի քարտուղար

Յուրաքանչյուր ժողովրդի կյանքում կան բացառիկ նշանակություն ունեցող տարեթվեր ու իրադարձություններ: Դրանք, որպես կյանքի ճանապարհին կանգնած վառ ուղենիշներ, օգնում են լույս սփռելու հերոսական անցյալի վրա, ավելի լավ տեսնելու, գնահատելու ձեռք բերածը, ոգեշնչում են նոր հղացումների: Մոլդավական ժողովրդի համար այդպիսի նշանավոր իրադարձություն հանդիսացավ սովետական սոցիալիստական ազգային պետականության կազմավորումը և հանրապետական կուսակցական կազմակերպության ծնունդը, որոնց 50-ամյա հոբելյանը աշխատավորները նշեցին սույն թվականի հոկտեմբերին:

Մոլդավական սովետական պետականության և հանրապետական կուսակցական կազմակերպության ստեղծումը շրջադարձային կետ դարձավ մեր ժողովրդի պատմական ճակատագրում: Այն հանդիսացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի, կոմունիստական կուսակցության կողմից լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևողական կիրառման, աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության— ՍՍՀ Միության— ազատ և իրավահավասար ժողովուրդների մեծ համագործակցության կազմավորման արգասիքը:

Հենց սովետական իշխանության պայմաններում արտասովոր լիակատարությամբ դրսևորվեցին մեր հանրապետության աշխատավոր մասսաների ստեղծարար եռանդը, ստեղծագործական ընդունակություններն ու տաղան-

դը, մի հանրապետություն, որտեղ մոլդավանների հետ միասնական սոցիալիստական ընտանիքում ապրում և աշխատում են ռուսներ, ուկրաինացիներ, գագաուզներ, շատ այլ ժողովուրդների ներկայացուցիչներ: Նրանց ջանքերի, եղբայրական ժողովուրդների և ամենից առաջ ռուս մեծ ժողովրդի համակողմանի օգնության շնորհիվ, անցյալում հետամնաց, հողագործական երկրամասը պատմական կարճ ժամանակամիջոցում դարձավ զարգացման բարձր աստիճանի հասած ինդուստրիալ-ագրարային հանրապետություն: Արագ տեմպերով են աճում գիտա-տեխնիկական պրոգրեսի զարգացումը պայմանավորող ճյուղերը, էլեկտրաէներգետիկան, մեքենաշինությունը, էլեկտրոնիկան, սարքաշինությունը: Ստեղծվել է սննդի ու թեթև հզոր արդյունաբերությունը: Այս բոլորի շնորհիվ արմատական փոփոխության ենթարկվեց Մոլդավիայի տնտեսական կոմպլեքսի կառուցվածքը և որոշվեց նրա տեղը աշխատանքի համամիութենական բաժանման մեջ: Հանրապետությունը թողարկում է տրակտորներ, ամենաբարդ տեսակի հաստոցներ ու սարքավորում, գեներատորներ, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, սուզվող էլեկտրապոմպեր, միկրոլարեր, առաջնակարգ ունիկալ սարքեր: Մոլդավիայի ավելի քան 100 անուն արդյունաբերական արտադրանքները բարի համբավ են վայելում միջազգային շուկայում և մեր պետության կողմից արտահանվում են աշխարհի ավելի քան 50 երկրներ: Հանրապետության գիտատեխնիկական պրոգրեսի արընթաց վերելքի մասին է վկայում նաև հետևյալ փաստը. ընթացիկ հնգամյակի միայն երեք տարում յուրացվել է մոտ 280 նոր մեքենաների, ապարատների, գործիքների, սարքերի և այլ առարկաների արտադրությունը, սկսել է դրանց մասսայական թողարկումը:

Մոլդավական ժողովրդի ամբողջ բազմակողմանի կյանքը, նրա մեծագործությունները հազարավոր թելերով կապված են ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների կյանքի, ստեղծարար աշխատանքի հետ:

Հանրապետության ամեն մի բնակիչ խորապես գիտակցում է, որ Մոլդավիայում պատրաստվող արտադրանքի մեջ մարմնավորված է եղբայրական բոլոր հանրապետությունների բանվորների, ինժեներատեխնիկական, գիտական աշխատողների տաղանդը, աշխատանքը: Այսպես, օրինակ, Քիշնևի տրակտորաշինական գործարանի ստեղծմանը մասնակցել են երկրի 130 քաղաքների ձեռնարկություններ ու գիտահետազոտական ինստիտուտներ: Համաժողովրդական էկոնոմիկայի և ժողովուրդների բարեկամության վիթխարի ուժն առանձնապես վառ դրսևորվեց մոլդավական պետական շրջանային էլեկտրակայանի կառուցման ժամանակ: Այդ էներգետիկ գիգանտի շոգետուրբինները պատրաստվել են Լենինգրադում, գեներատորները՝ Խարկովում, կաթսաները՝ Տագանրոգում, տրանսֆորմատորները՝ Զապորոժիեում, էլեկտրասարքավորումը՝ Հայաստանում, Ուզբեկստանում և Լատվիայում:

Շատ են սոցիալական պրոգրեսի ուղիով ժողովուրդների առաջընթացի շարժումը բնութագրող տարբերիչ գծերը: Առավել արտահայտիչներից են հին քաղաքների աճն ու կերպարանափոխությունը, նոր քաղաքների ծնունդը, գյուղերի մասսայական բարեփոխումը, դրանց բարեկարգումը՝ ժամանակակից կենցաղի պահանջների համեմատ: 1924-ից մինչև 1973 թվականը կառուցվել և շահագործման են հանձնվել 28,6 միլիոն քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ, որ համազոր է 100 հազարական բնակիչ ունեցող 28 քաղաքի ստեղծման:



Հանրապետության գյուղատնտեսության տնտեսական պոտենցիալի աճի տեմպերն առավել ակնհայտ պատկերացնելու համար դիմենք թվերի լեզվին: Մոլդավիայում կոլեկտիվացման ավարտման ժամանակից ի վեր (1950 թվական) նրա համախառն արտադրանքն ավելացել է 3,5 անգամ: Հացահատիկի արտադրությունն աճել է 2,2 անգամ, այն դեպքում, երբ դրա մշակմանը հատկացվող տարածությունները՝ երկրին անհրաժեշտ այլ կուլտուրաների մշակությունն ընդարձակելու նպատակով, կրճատվել են կիսով չափ: Այդ նույն ժամանակաշրջանում բանջարեղենի արտադրությունն ավելացել է 4,6, խաղողինը՝ 5,2, մրգերինն ու շաքարի ճակնդեղինը՝ մոտ 9 և ծխախոտինը՝ ավելի քան 19 անգամ: Զգալիորեն աճել է անասնապահության արդյունավետությունը: Հանրապետությունը կաթ և միս է արտադրում համապատասխանաբար 3,3 և 3,5 անգամ շատ, քան երկու և ավելի տասնամյակ սրանից առաջ:

Այս բոլորն արդյունք է մոլդավական ժողովրդի անձնուրաց աշխատանքի, հանրապետության կուսակցական կազմակերպության նպատակային գործունեության՝ հանուն ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումում (1965 թվական) մշակված, Կենտկոմի հետագա պլենումներում, կուսակցության XXIII և XXIV համագումարներում զարգացած ու ամրապնդված ՍՄԿԿ ագրարային քաղաքականության անշեղ կենսագործման:

Հանրապետությունում տեղի է ունենում գյուղացիական արտադրության մեծ մասշտաբի համակենտրոնացում ու խոր մասնագիտացում՝ միջտնտեսական կոոպերացիայի, ագրարային-արդյունաբերական ինտեգրացիայի, արտադրության և գիտության սերտ կապի հիման վրա:

Ստեղծվել և հաջողությամբ գործում են ավելի քան երեք հարյուր մասնագիտացված միջկոլտնտեսային և մոտ երկու հարյուր ագրարային-արդյունաբերական ձեռնարկություններ, արտադրական և գիտա-արտադրական մի շարք միավորումներ:

Մոլդավիայում սոցիալիստական շինարարության տարիները նշանավորվեցին կուլտուրական կյանքում տեղի ունեցած իսկական հեղափոխական վերափոխումներով:

Հանրապետությունում ներկայումս գործում են 2.140 հանրակրթական դպրոց, 46 տեխնիկում, 8 բուհ, 80-ից ավելի պրոֆտեխնիկական ուսումնարաններ: Ստեղծվել և պրակտիկայում իրենց լիովին արդարացրել են նոր տիպի միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները՝ սովխոզ-տեխնիկումները, որոնցում կադրերի պատրաստումը առավելագույնս համապատասխանում է գյուղատնտեսության արտադրության հարաճուն կարիքներին: Ուսուցման բոլոր տեսակներում ընդգրկված է ավելի քան 1,2 միլիոն մարդ:

Անընդհատ ընդլայնվում և կատարելագործվում է կուլտուր-լուսավորական հաստատությունների ցանցը, որոնք մեծ դեր են խաղում մարդկանց գաղափարական ու բարոյական դաստիարակության ասպարեզում: Զարգանում է մամուլը, աճել է հրատարակվող գրքերի քանակը, դրանց տպաքանակը: Հանրապետությունում լույս են տեսնում մոտ 200 թերթ, ամսագիր, պարբերական այլ հրատարակություններ:

Մոլդավիան ունի իր գիտությունների ակադեմիան, գիտահետազոտական ինստիտուտների լայն ցանցը, որտեղ աշխատում են ավելի քան 6 հազար գիտ-

աշխատողներ, որոնց թվում գիտության ավելի քան 2.470 թեկնածուներ և 183 դոկտորներ:

Հանրապետության աշխատավորները քաջ գիտակցում են, որ իրենց բոլոր հաջողություններով պարտական են հարազատ կոմունիստական կուսակցությանը: Միայն բոլոր ազգությունների աշխատավորական մասսաների կենսական շահերն արտահայտող կոմունիստների կուսակցությունն էր ունակ մեկ միասնական մոնոլիտում համախմբելու ժողովուրդներին և նրանց ջանքերն ուղղելու նոր հասարակարգի կառուցմանը:



Չափազանց ծանր, տառապալից էր մոլդավական ժողովրդի՝ դեպի ազատություն ու երջանկություն տանող ճանապարհը: Շատ ծանր ապրումներ ունեցավ, երկար տառապեց նա, նվաճելու համար իր գոյության, ազգային ինքնուրույնության իրավունքը: Եվ այդ ողջ ժամանակամիջոցում, ամենածանր տարիներին նա զգացել է իր անկաշառ բարեկամների՝ ռուս, ուկրաինական և Ռուսաստանի մյուս ժողովուրդների օգնությունը: Նրանց աջակցությունն էլ հենց հանդիսացավ մոլդովանների ազգային ընդհանրության կազմավորման, նրանց՝ որպես ազգություն, որպես ժողովուրդ պաշտպանելու և պահպանելու վճռական գործոնը:

1812 թվականին՝ Բեսարաբիայի միացումը Ռուսաստանին մեր ժողովրդին փրկեց թուրքական ֆեոդալների լծից: Այդ օրվանից նա իր ճակատագիրը կապեց ռուս ժողովրդի հետ, հաղորդակցվեց համառուսական հեղափոխական-ազատագրական շարժմանը: Մեր երկրամասը դարձավ դեկաբրիստների, հեղափոխական նարոդնիկների ակտիվ գործունեության շրջաններից մեկը: XIX—XX դարերի սահմանագծում Վ. Ի. Լենինի ստեղծած՝ Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության միության» ազդեցությամբ և Ռուսաստանի արդյունաբերական կենտրոններից եկած քաղաքական աքսորականների օգնությամբ Մոլդավիայում ստեղծվում են սոցիալ-դեմոկրատական խմբակներ ու խմբեր, իսկ 1902 թվականի վերջերին՝ ՌՍԴԲԿ Քիշնևի կոմիտեն: Մոլդավիայի կոմունիստները, մոլդավական ողջ ժողովուրդը հպարտանում են, որ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Քիշնևում կազմակերպվեց Ռուսաստանի առաջին, «Իսկրա» լրագրի ընդհատակյա տպարանը, որի գործունեությունը նպաստեց բոլշևիկների լենինյան կուսակցության՝ գիտական կոմունիզմի կուսակցության ստեղծման նախապատրաստմանը:

Մոլդավիայի բոլշևիկները գլխավորում էին երկրամասի աշխատավորների հեղափոխական-ազատագրական պայքարը, ամրապնդում նրանց միասնությունը ողջ երկրի պրոլետարիատի ու գյուղացիության հետ: Մեծ Հոկտեմբերը նոր դարաշրջան բացեց մոլդավական ժողովրդի, ինչպես և ամբողջ մարդկության պատմության մեջ: Պետերբուրգից, Մոսկվայից և Ռուսաստանի այլ արդյունաբերական կենտրոններից հետո, 1918 թվականի հունվարի 1(14)-ին, սովետական իշխանություն հաստատվեց նախկին Բեսարաբիայի նահանգում: Մոլդավիայի պրոլետարիատի մեծ նվաճումն էր այդ, նրա խոր հեղափոխականության վկայությունը:

Այն ժամանակ, սակայն, բովանդակ մոլդավական ժողովուրդը չէր, որ կարողացավ օգտվել մեծ Հոկտեմբերի նվաճումներից և ձեռնամուխ լինել սոցիալիզմի կառուցմանն իր հողի վրա: Թագավորական Ռումինիան, բլոկի



մեջ մտնելով Արևմուտքի իմպերիալիստների հետ, տեղական բուրժուական նացիոնալիստների դավադիր համաձայնությամբ, աշխատավորների շահերին ու կամքին հակառակ, բռնի անջատեց Բեսարաբիան երիտասարդ սովետների երկրից: Ռումինիայի իշխողների թելադրանքով օկուպացվեց Պրուտի և Դնեստրի միջև ընկած տարածությունը, որն անցյալում երբեք ռումինական չէր եղել, այլ Ռուսաստանի կազմի մեջ էր գտնվել ռումինական պետության կազմավորումից դեռ շատ առաջ:

Բեսարաբիայի աշխատավորները, ընդհատակյա կոմունիստական կազմակերպության գլխավորությամբ, ազատագրական պայքար էին մղում օտարերկրյա ստրկացնողների դեմ: Այդ իր արտահայտությունը գտավ բանվորական հարյուրավոր գործադուլներում, ցույցերում, գյուղացիական ելույթներում, զինված ապստամբություններում:

Մոլդավական ժողովուրդը, ինչպես նաև սովետական պետության բոլոր ժողովուրդները, սովետական իշխանության պայմաններում ռեալ հնարավորություն ստացավ իր ազգային-պետական ինքնորոշման համար: 1924 թվականի հոկտեմբերի 12-ին տեղի ունեցավ պատմական նշանակալից իրադարձությունը— ստեղծվեց Մոլդավական Ինքնավար Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը: Նույն թվականի դեկտեմբերին առաջին հանրապետական կուսակցական կոնֆերանսում ավարտվեց նաև Մոլդավիայի կուսակցական կազմակերպության կազմակերպական ձևավորումը: Այդ իրադարձությունները բերկրանքով ընդունվեցին Մոլդավիայի ինչպես ձախափնյա, նույնպես և աջափնյա հատվածներում բնակվող բոլոր մոլդովանների կողմից: Մոլդավական ժողովրդի հաղթանակը ողջունում էր Ռումինիայի և մյուս երկրների պրոգրեսիվ հասարակայնությունը:

Երիտասարդ հանրապետությունը, եղբայրական սովետական ժողովուրդների ակտիվ օգնությամբ, սկսեց արագ զարգացնել երկրի արտադրողական ուժերը, գիտությունը, կուլտուրան: Վերակառուցվում և կառուցվում էին նոր գործարաններ ու ֆաբրիկաներ: Ավարտվեց գյուղատնտեսության կոլեկտիվացումը: Հաջողությամբ զարգանում էր կուլտուրական հեղափոխությունը, ձևավորվում էր մոլդավական սովետական մտավորականությունը:

Սոցիալիստական շինարարությունը ՍՍՀՄ-ում, տնտեսության, կուլտուրայի զարգացման բնագավառում Մոլդավական ԻՍՍՀ-ի հաջողությունները հեղափոխական հզոր ազդեցություն էին գործում ստրկացված Բեսարաբիայի աշխատավորների վրա: Նրանց հերոսական պայքարը պաշտպանող սովետական կառավարությունը երբեք չի ընդունել Բեսարաբիայի զավթումն ու աներքիան և հետևողական ջանքեր էր գործադրում այն օկուպացումից ազատագրելու համար: Բեսարաբիայի աշխատավոր ժողովրդի՝ ՍՍՀՄ-ի հետ վերամիավորվելու ձգտումը պաշտպանում էին աշխարհի շատ երկրների առաջադեմ ուժերը, այդ թվում նաև Ռումինիայի կոմունիստական կուսակցությունը:

1940 թվականի ամռանն ստեղծված իրադրությունը՝ կապված Բեսարաբիան Սովետական Միության դեմ ֆաշիստական հարձակման պլացդարմներից մեկը դարձնելու՝ Ռումինիայի կառավարող շրջանների նկրտումների հետ, անհրաժեշտ էր դարձնում նրա անհապաղ ազատագրումը: Սովետական կառավարության ձեռնարկած վճռական միջոցների շնորհիվ 1940 թվականի հունիսի 28-ին Բեսարաբիան վերամիավորվեց ՍՍՀ Միության հետ:

ՍՍՀՄ Գերագույն սովետի VII նստաշրջանը, ընդառաջելով Մոլդավիայի աշխատավորների կամքին, 1940 թվականի օգոստոսի 2-ին Մոլդավական ԻՍՍՀ-ն վերակազմավորեց միութենական Մոլդավական Սովետական Սոցիալիստական պետության: Այդ նիշարժան սահմանադրական ակտում մարմնավորվեցին պատմական այնպիսի իրադարձություններ ու փաստեր, ինչպես՝ սովետական իշխանության վերականգնումը Բեսարաբիայում, մոլդավական ժողովրդի վերամիավորումը, նրա կոնսոլիդացումը սոցիալիստական ազգության:

1940 թվականի օգոստոսի 14-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ Մոլդավիայի մարզային կուսակցական կազմակերպությունը վերակազմվեց Մոլդավիայի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության: Մոլդավիայի Կ(բ) կուսակցության I համագումարը, որ կայացավ 1941 թվականի փետրվարի 6—8-ին, կազմակերպորեն ձևակերպեց Մոլդավիայի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը:

Մոլդավական ժողովրդի և Մոլդավիայի կոմկուսակցության պատմության մեջ սկսվեց նոր ժամանակաշրջան: Ազատագրված շրջաններում ամեն օր տեղի էին ունենում սոցիալիստական վերափոխումներ, որոնք, սակայն, ընդհատվեցին ֆաշիստների սանձազերծած պատերազմի պատճառով:

Մոլդավիայի որդիներն ու դուստրերը, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ ուս-ուսի, մարտնչում էին ռազմաճակատներում, էվակուացվելով թիկունքում, աշխատում էին հանուն հաղթանակի՝ անարգ թշնամու դեմ: Հազարավոր հայրենասերներ մտնում էին պարտիզանական ջոկատները, կազմակերպում ընդհատակյա խմբեր, նրանցից շատերը ֆաշիզմի դեմ մղած մարտերում ընկան քաջի մահով: Մոլդավիայի ավելի քան 85 հազար բնիկներ՝ զինվորներ ու սպաներ, պարտիզան-պարտիզանուհիներ, ընդհատակյա գործիչներ պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով, 16-ը արժանացան Սովետական Միության հերոսի կոչման:

Մոլդավական ժողովուրդը, հենվելով եղբայրական ժողովուրդների նյութա-տեխնիկական հզոր բազայի վրա, օգտագործելով նրանց հարուստ փորձը, կարճ ժամանակամիջոցում ապաքինեց ֆաշիստական ագրեսիայի հասցրած վերքերը, կառուցեց սոցիալիզմի հիմքերը:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, գնահատելով Մոլդավիայի հաջողությունները հետպատերազմյան տարիներին, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին զեկուցման մեջ ասաց. «Դեռ վերջերս հետամնաց ծայրամաս էր Մոլդավիան: Եթե հանենք պատերազմը և հետպատերազմյան առաջին տարիները, որոնց ընթացքում վերականգնվեցին ավերածությունները, ապա սովետական ժողովուրդների ընտանիքում այդ հանրապետության զարգացմանն ընկնում է քառորդ դարից ոչ ավելի: Բայց ինչպիսի՜ վիթխարի ուղի է անցել նա այդ կարճ ժամանակամիջոցում»:

✦

Մոլդավական ժողովրդի՝ 50 տարում ձեռք բերած հաջողությունները, հիրավի, հսկայական են: Բայց ամենանշանակալից նվաճումը սոցիալիստական կյանքի ողջ կացութաձևով, կուսակցության կողմից դաստիարակված նոր մարդն է:

Մոլդավիայի աշխատավորների ճնշող մեծամասնության գիտակցության



մեջ մարքս-լենինյան գաղափարական սկզբունքների արմատավորումը կանխորոշեց նրանց հոգում սովետական ողջ ժողովրդին հատուկ բարոյական այնպիսի վեհ հատկանիշների ձևավորումը, ինչպիսիք են՝ նվիրվածությունը կոմունիզմի գաղափարներին, սովետական կենարար հայրենասիրությունը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, հավատարմությունը ժողովուրդների բարեկամությանը, անձնվիրությունն աշխատանքում, հասարակության նըկատմամբ պատասխանատվության ու բարձր պարտքի գիտակցումը:

Հանրապետությունում հասարակական վերափոխումների գլխավոր շարժիչ, ստեղծարար ուժը, հասարակական նոր հարաբերությունների ու բարոյական վեհ հատկանիշների հետևողական տարածողն ու կրողը սոցիալիստական բանվոր դասակարգն է:

Մոլդավական բանվորները՝ տեխնիկական առաջընթացի առաջավոր գծում, ստեղծում են հասարակական պրոդուկտի և ազգային եկամտի հիմնական մասը: Նրանք կատարելագործում են իրենց պրոֆեսիոնալ կուլտուրան, վարպետությունը, բարձրացնում կրթական մակարդակը: Մոլդավիայի ձեռնարկություններում ծնվեցին ու ջերմ պաշտպանություն գտան նորանոր նախաձեռնություններ, որոնց նպատակն էր սարքավորման լավագույն օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, հումքի ու նյութերի տնտեսումը:

Լայնորեն տարածվեց Քիշնևի տրակտորաշինական գործարանի կադրային բանվորներ Անատոլի Ագապովի և Ստեպան Մինդրյանուի հայրենասիրական շարժումը, որոնք հանդես եկան Մոլդավական ՍՍՀ-ի և Մոլդավիայի կոմկուսակցության կազմավորման 50-ամյակին անհատական հնգամյա առաջադրանքը կատարելու կոչով: Տիրասպոլի «Էլեկտրոմաշ» գործարանի բանվորներ, կոմունիստներ՝ սոցիալիստական աշխատանքի հերոս, հղկող Ի. Ա. Պավլովը և խառատ-ներտաշող Ի. Պ. Խարաբաջիուն պարտավորվեցին ժամկետից շուտ կատարել հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները: Նըրանց օրինակին հետևեցին Տիրասպոլի ավելի քան 6 հազար բանվոր: Նրանք պատվով են կատարում իրենց խոստումը:

Լայն համբավ ստացավ Քիշնևի «Ստյաուա Ռոշիե» տրիկոտաժի ֆիրմայի վարպետի օգնական Մարիա Բիրյուկի անունը: Նրա գլխավորած բրիգադան որոշեց երկրում հասնել հաստոցների ռեկորդային արտադրողականության: Բենդերի մետաքսի կոմբինատի ջուլհակուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Վալենտինա Ֆիրսովայի՝ ութժամյա հերթափոխային պլանը 7 ժամում կատարելու վերաբերյալ արժեքավոր նախաձեռնությունը վաղուց դուրս է եկել կոմբինատի շրջանակներից և այժմ լայնորեն տարածվում է ամբողջ հանրապետությունում:

Փոխվել է նաև կոլտնտեսային գյուղացիությունը: Հասունացած սոցիալիզմի, գիտատեխնիկական արագ զարգացող հեղափոխության պայմաններում ամրապնդվել են բանվոր դասակարգի հետ նրա դաշինքը, աշխատանքային համագործակցությունը տնտեսական բարդ խնդիրները լուծելիս: Մոլդավիայի ժամանակակից գյուղական աշխատավորը կոլեկտիվիստ է, հայրենասեր, հոգեպես հարուստ և տեխնիկապես գրագետ, տնտեսության կառավարման ինդուստրիալ մեթոդներին հաղորդակից մարդ:

Նոր հատկանիշներ են բնութագրում մոլդավական սովետական մտավորականությանը, որն աճեց, ձևավորվեց, կոփվեց բանվոր դասակարգի և կոլ-

տնտեսային գյուղացիության հետ ընդհանուր պայքարում և համատեղ աշխատանքում: Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ այժմ աշխատում են 200 հազարից ավելի մասնագետներ՝ բարձր ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ, որ 13 անգամ ավելի է, քան 1940 թվականին:

Սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր կյանքում ձեռք բերած նշանավոր հաջողությունների, մեր բազմազգ պետության կուռ միասնականության ապահովման, ազգային բոլոր հանրապետությունների ծաղկման ու հեղափոխական բարենորոգման մեջ առաջատար դերը պատկանում է մեծ Լենինի ստեղծած Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը, որի անբաժանելի բաղկացուցիչ մասն է Մոլդավիայի կոմունիստական կուսակցությունը:

Կոմունիստների դերը, ազդեցությունը, հեղինակությունն օրավուր աճում են հանրապետության աշխատավորների շրջանում: Դա իր արտահայտությունն է գտնում թե՛ կուսակցական կազմակերպությունների թվական կազմի ավելացման, թե՛ մասսաների հետ ունեցած նրանց կապերի ամրապնդման մեջ: Եթե առաջին մարզային կուսակցական կոնֆերանսի օրերին (1924 թվականի դեկտեմբեր) մեզ մոտ կային 700 կոմունիստների միավորող 46 կուսակցական բջիջներ, ապա այժմ Մոլդավիայի կոմկուսակցության շարքերում կան ավելի քան 124 հազար ՍՄԿԿ անդամ ու թեկնածու, 63 ազգությունների ներկայացուցիչներ, որոնք միավորված են 3.719 սկզբնական կազմակերպություններում: Կուսակցական կազմակերպությունների աճման ու ամրապընդման շնորհիվ ուժեղանում է աշխատավորների շրջանում տարվող նրանց կազմակերպական և դաստիարակչական գործունեությունը, աշխատանքային կոլեկտիվներում ապահովվում է գործարար մթնոլորտ:

Մոլդավիայի կոմունիստական կուսակցությունն իր կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքում շարունակ հենվում է պետական իշխանության օրգանների, աշխատավորների մասսայական կազմակերպությունների վրա և, ամենից առաջ՝ արհմիությունների, կոմերիտմիության վրա:

Մոլդավական ազգային պետականության 50-ամյա ողջ պատմության ընթացքում ժողովրդապետության իսկական օրգաններ են եղել աշխատավորների դեպուտատների սովետները: Հանրապետական կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ, նրանք ծավալում են տնտեսական-կազմակերպական և կուլտուր-դաստիարակչական լայն աշխատանք, անշեղ կիրառում, աշխատավորներին պետական գործերի կառավարմանն ըստ ամենայնի ներգրավելու լենինյան սկզբունքը, մոբիլիզացնում նրանց եռանդը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների հաջող լուծման համար:

Սովետական իշխանության տարիներին Մոլդավիան, ինչպես նաև սովետական մյուս հանրապետությունները, վիթխարի թռիչք կատարեց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունից դեպի արտադրաուժերի և առաջավոր կուլտուրայի զարգացման բարձր մակարդակը: Մոլդավական ժողովուրդը հպարտ է նրանով, որ հանդիսանում է ՍՍՀՄ միասնական էկոնոմիկայի ակտիվ կառուցողը, իր լուման է մուծում համաժողովրդական սոցիալիստական կուլտուրայի զարգացման մեջ: Նա շատ երջանիկ է, որ Մոլդավական ՍՍՀ մտնում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների հզոր Միության մեջ, որպես նրա անքակտելի բաղկացուցիչ մասը:

«Политическое самообразование», № 9, 1974.




# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԿԵՆՍՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Կ. Ն. ԿՈՒԼՄԱԹՈՎ**
*Կիրգիզիայի կոմկուսակցության Կենտկոմի քարտուղար*

1974 թ. հոկտեմբերին լրացավ Կիրգիզական ՍՍՀ-ի և Կիրգիզիայի կոմունիստական կուսակցության հիսուն տարին: Սոցիալիստական ազգային պետականության կազմավորումը և հանրապետական կուսակցական կազմակերպության հիմնադրումը նշանավոր իրադարձություն էին կիրգիզ ժողովրդի, մեր երկրի բոլոր աշխատավորների կյանքում: Այդ իրադարձությունն անխզելիորեն կապված է մեծ Լենինի անվան հետ, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակի օրինաչափ արդյունքն է, Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ ապացույցը:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բոլոր պայմաններն ստեղծել են կիրգիզ ժողովրդի, ինչպես և ՍՍՀՄ եղբայրական մյուս ժողովուրդների ազատ, բազմակողմանի զարգացման համար: Կուսակցությունը կարևոր նշանակություն է տվել ազգային-պետական շինարարությանը Սովետական Արևելքում՝ հաշվի առնելով բնակչության ազգային կազմը, նրա տնտեսական ու կուլտուրական պահանջները: Այդ բնագավառում խոշոր քայլ էր Միջին Ասիայի ազգային-տերիտորիալ սահմանազատումը, որի գաղափարը տվել էր Լենինը դեռևս 1920 թվականին: Համառուսաստանյան Կենտգործկոմի երկրորդ սեսիան, հետևելով լենինյան պատգամներին, 1924 թ. հոկտեմբերի 14-ին հաստատեց Թուրքմենական ԱՍՍՀ-ի որոշումը սահմանազատման մասին: Միջին Ասիայի ժողովուրդների պետական շինարարության ընթացքում կազմակերպվեց Կիրգիզական ավտոնոմ մարզը, որը մտավ ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ: Կիրգիզ ժողովուրդն առաջին անգամ ձեռք բերեց իր ազգային պետականությունը, մի բան, որ լիովին համապատասխանում էր նրա շահերին և ձգտումներին, պայմաններ էր ստեղծում վերացնելու տնտեսական և կուլտուրական հետամնացությունը, արագացնում էր ազգային կոնսոլիդացիան, ավելի էր ամրապնդում ինտերնացիոնալ կապերն ու բարեկամությունը երկրի մյուս եղբայրական ժողովուրդների հետ:

Ազգային-պետական սահմանազատմանը համապատասխան կառուցվում էին նաև Միջին Ասիայի կուսակցական կազմակերպությունները: ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի՝ 1924 թ. հոկտեմբերի 18-ի որոշմամբ ստեղծվեց Կիրգիզական մարզային կուսակցական կազմակերպության ժամանակավոր բյուրո, որը մեծ աշխատանք կատարեց մարզային կուսկազմակերպության ձևավորման գործում: Կիրգիզիայի կուսկազմակերպությունն անդադրում ուշադրություն էր նվիրում տեղական բնակչության շրջանում տարվող

աշխատանքին, ներգրավելով նրան սոցիալիզմի կառուցման համար մղվող ակտիվ պայքարում, դաստիարակելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով:

Կուսակցության ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների հետևողական կենսագործման նոր վկայությունն էր 1926 թ. փետրվարի 1-ին Կիրգիզական ավտոնոմ մարզի վերակազմավորումը Կիրգիզական ԱՍՍՀ-ի. ֆեդերացիայի իրավունքներով այն մտավ ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ: Կիրգիզական սովետական ազգային պետականության ամրապնդման և հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունեցավ պետական ապարատի ապահովումը տեղական կադրերով, ազգային լեզվով գործավարության իրականացումը, ինչպես նաև սովետականացումը քոչվորական շրջանների, ուր հատկապես ուժեղ էին նահապետական-ֆեոդալական հարաբերությունների վերապրուկները: Այդ ամենը նպաստում էր կուսակցական և սովետական ապարատի ամրապնդմանը, նրա մերձեցմանը աշխատավորների լայն զանգվածներին, վերջիններիս ներգրավմանը հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության ոլորտը, պրոլետարիատի դիկտատուրայի սոցիալական բազայի ընդլայնմանը:

Կիրգիզական ժողովրդի, ինչպես և ցարական Ռուսաստանի՝ նախկինում ճնշված մյուս ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը հաղթահարվում էր սոցիալիզմի կառուցման՝ երկրի ինդուստրացման, գյուղատնտեսության կոլեկտիվացման, կուլտուրական հեղափոխության լենինյան պլանի կենսագործման ընթացքում: Արդյունաբերական և կուլտուրական օջախների ստեղծման, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման նպատակով հանրապետությունում ծավալված վիթխարի աշխատանքում վճռական դեր է խաղացել ռուս ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների եղբայրական օգնությունը: Կիրգիզիային ցույց է տրվել ֆինանսական հարաճուն օգնություն: Երկրի կենտրոնական շրջաններից փոխադրված մի շարք ձեռնարկություններ են վերահիմնադրվել այստեղ: Մատակարարվում էին սարքավորում, մեքենաներ, մեխանիզմներ, տեղական բնակչությունից բարձրորակ բանվորներ ու մասնագետներ էին պատրաստվում և այլն: Կուզենայի հատկապես նշել այն վիթխարի օգնությունը, որ նոր կյանքի կառուցման գործում կիրգիզ ժողովրդին ցույց են տվել երկրի մյուս շրջաններից հանրապետություն եկած բարձրորակ բանվորական կադրերը: Տեղի աշխատավորներին նրանք փոխանցել են պրոֆեսիոնալ վարպետություն, հեղափոխական պրոլետարական ավանդույթներ:

Սոցիալ-տնտեսական խոր վերափոխությունների շնորհիվ Կիրգիզիայի աշխատավորները սովետական եղբայրական մյուս ժողովուրդների հետ մեկտեղ հասան սոցիալիզմի հաղթանակին: Ստեղծվեց սոցիալիստական էկոնոմիկա: Արմատական փոփոխություններ տեղի ունեցան սոցիալ-դասակարգային կառուցվածքում. վերացվեցին շահագործողական դասակարգերը, ձևավորվեցին բազմազգ բանվոր դասակարգ և իսկական ժողովրդական մտավորականություն, արմատապես փոխվեց գյուղացիության դասակարգային բնույթը: Կիրգիզ ժողովրդի հասարակական կյանքի բոլոր ոլորտներում կատարված սոցիալիստական վերափոխությունները ապահովեցին նրա համախմբումը սոցիալիստական ազգի մեջ: Կիրգիզական սոցիալիստական ազգը կազմավորվել է նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ մղվող պայքարում, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարախոսության արմատավորման ընթացքում:

Սոցիալիստական շինարարության հաջողությունները անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին 1936 թվականին Կիրգիզական ԱՍՍՀ-ն միութենական հանրապետության վերակազմավորելու գործում: Սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում կոփվել և աճել են հանրապետության կուսակցական կազմակերպությունները: 1937 թ. ապրիլին, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշման համապատասխան, Կիրգիզական մարզային կուսկազմակերպությու-



նը վերակազմավորվեց և դարձավ Կիրգիզիայի կոմունիստական կուսակցություն:

Սովետական իշխանության գոյության այդ տարիներին Կիրգիզիան դարձել է բարձր զարգացած արդյունաբերության, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության և կուլտուրայի հանրապետություն: Կիրգիզիայի էկոնոմիկան ունի վառ արտահայտված ինդուստրիալ բնույթ: Ողջ երկրի մասշտաբով աշխատանքի սոցիալիստական բաժանումը հնարավորություն ընձեռեց տեղական պայմաններում ստեղծելու առավել արդյունավետ ճյուղեր: Առանձնապես արագ տեմպերով են զարգանում էլեկտրաէներգետիկան, գունավոր մետաղագործությունը, մեքենաշինությունը, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, որոնք ապահովում են գիտատեխնիկական արագ առաջընթացը: Ստեղծված են արդյունաբերության նոր կարևոր ճյուղեր՝ սարքաշինություն, ռադիոէլեկտրոնային, ավտոմոբիլային, բրդյա-մահուդի և այլ արտադրություններ:

Գյուղատնտեսությունը զարգանում է արդի գիտության ու տեխնիկայի նվաճումների հիման վրա: Տարեցտարի ընդլայնվում ու ամրապնդվում է նրա նյութատեխնիկական բազան: Այդ հնարավորություն է ընձեռում ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, որը, նախահեղափոխական ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 6,3 անգամ: Զգալիորեն մեծացել է Կիրգիզիայի գյուղատնտեսության հիմնական ճյուղի՝ անասնաբուծության մթերատվությունը:

Վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել կուլտուրական շինարարության ասպարեզում: Եթե մինչև հեղափոխությունը Կիրգիզիայի բնակչության ընդհանուր գրագիտությունը կազմում էր մոտ 3 տոկոս, իսկ տեղական բնակչությանը դրանից էլ ցածր էր, ապա արդի Կիրգիզստանը համատարած գրագիտության հանրապետություն է: Ավարտված է ութամյա ընդհանուր պարտադիր կրթությունը, հաջողությամբ կենսագործվում է անցումը երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության: Հանրապետությունում այժմ սովորում է նրա յուրաքանչյուր երրորդ բնակիչը: Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների զարգացած ցանցը հնարավորություն է ընձեռում պատրաստելու կադրեր՝ 150 մասնագիտություններով: Այժմ հանրապետության ժողովրդական տնտեսությունում աշխատում են մոտ 190 հազար որակյալ մասնագետներ:

Արագ տեմպերով է առաջադիմում գիտությունը: Կիրգիզիայի գիտահետազոտական 64 հաստատություններում աշխատում են ավելի քան 6 հազար գիտաշխատողներ, այդ թվում գիտությունների 2 հազարից ավելի դոկտորներ ու թեկնածուներ: Աճում է գիտնականների ավանդը էկոնոմիկայի և մշակույթի զարգացման մարզում, բարձրանում է գիտական հետազոտությունների արդյունավետությունը:

Իսկական բարգավաճման հասավ կիրգիզ ժողովրդի՝ բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային, ոգով ու բնույթով ինտերնացիոնալ կուլտուրան, որը մշտապես հարստանում է եղբայրական ժողովուրդների մշակույթի հոգևոր արժեքներով, արժանավայել ավանդ է մուծում սովետական կուլտուրայի ընդհանուր գանձարանը:

Էկոնոմիկայի աճի հիման վրա անշեղ բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը: Նրանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման նպատակով օգտագործվում է ազգային եկամտի երեք քառորդը: Կիրգիզ ժողովուրդը, ինչպես և եղբայրական մյուս ժողովուրդները, ապրում է ապահով, օգտվում սոցիալիզմի՝ աշխատավորներին շնորհած բոլոր բարիքներից, բարձր է գնահատում սոցիալիզմի պատմական նվաճումները:

Մեր հանրապետության աշխատավորների ակնբախ հաջողությունները օրինաչափ արդյունքն են լենինյան մեծ կուսակցության անբաժանելի բաղադրամասը հանդիսացող Կիրգիզիայի կոմունիստական կուսակցության բազմակողմանի գործունեության: Պայքարի բոլոր փուլերում հաստատուն ու հետևողականորեն նա կիրառել և գործադրում է ՍՄԿԿ գլխավոր գիծը, գործում

նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ղեկավարությամբ ու մշտական օգնությամբ:

Սոցիալիստական, կոմունիստական շինարարության ընթացքում Կիրգիզիայի կոմունիստական կուսակցությունը դարձել է ՍՄԿԿ-ի գաղափարապես կոփված, կազմակերպչորեն ամրապնդված, համախմբված, կուռ մարտական ջոկատը: Եթե 1925 թ. հունվարի 1-ի դրությամբ կիրգիզական կուսկազմակերպությունում կային ընդամենը 2.529 կոմունիստներ, ապա 1974 թ. հունվարի 1-ի դրությամբ նրա շարքերում արդեն կան 107.180 կոմունիստներ: Անհամեմատ բարելավվել է նրա որակական կազմը: 1925 թ. հանրապետության կուսկազմակերպություններում բանորները կազմում էին մոտ 9 տոկոս, իսկ այժմ այն հասնում է 33,9 տոկոսի: Կիրգիզիայի կուսկազմակերպությունները, անշեղորեն կատարելով ՍՄԿԿ XXIV համագումարի ցուցումները, ձգտում են ավելի բարելավել իրենց որակական կազմը, առաջին հերթին մեր հասարակության առաջատար սոցիալական ուժի՝ բանվոր դասակարգի արժանավոր ներկայացուցիչներին իրենց շարքերն ընդգրկելու միջոցով: Կիրգիզիայի կոմունիստական կուսակցության մեջ այժմ կան 61 հազար բանվոր ու կոլտնտեսական և աշխատավոր մտավորականության ավելի քան 46 հազար ներկայացուցիչներ, որոնք համախմբված են 3.862 սկզբնական կուսկազմակերպություններում: Նյութական արտադրության ոլորտում զբաղված է հանրապետության բոլոր կոմունիստների 65 տոկոսը:

Կիրգիզիայի կոմունիստական կուսակցությունը, ՍՄԿԿ մյուս ջոկատների նման, իր գործունեության մեջ մշտապես ղեկավարվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և փոխադարձ օգնության լենինյան անխախտելի սկզբունքներով. այդ ենթադրում է ո՛չ միայն մեր ժողովուրդների համագործակցության ու փոխադարձ օգնության ընդլայնում ու խորացում, այլև կոմունիստական շինարարության ընդհանուր գործում յուրաքանչյուր միութենական հանրապետության ավանդի մեծացում: Եվ որքան ավելի ծանրակշիռ է այդ ավանդը, այնքան ավելի բազմակողմանի և սերտ կդառնան եղբայրական կապերը, առավել արդյունավետ կլինի հասարակական ողջ կյանքի ինտերնացիոնալացման, սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների մերձեցման պրոցեսը:

Կիրգիզիայի աշխատավորները լավ են հասկանում, որ հանրապետության էկոնոմիկան երկրի միասնական ժողովրդա-տնտեսական համալիրի բաղադրամասն է: Նա չի կարող հաջողությամբ զարգանալ առանց եղբայրական հանրապետությունների համագործակցության ու սերտ կապերի: Աշխատանքի ընդհանուր-միութենական բաժանման մեջ հանրապետության արդի տերիտորիալ-արտադրական համալիրը դարձել է գունավոր և հազվագյուտ մետաղների, ավտոմատ ու կիսավտոմատ գծերի, դարբնոցա-մամլակային մեքենաների, սարքերի, էլեկտրատեխնիկական արտադրանքների, մամլիչ-տեսակավորողների, ծխախոտի, նուրբ և կիսանուրբ բրդի, մսի, շաքարի և արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքների այլ տեսակների արտադրության շրջան:

Կիրգիզիան երկրի տնտեսական շատ շրջաններն է ուղարկում մետաղահատ հաստոցներ, էլեկտրաշարժիչներ, ճշգրիտ սարքեր, սնդիկ, անտիմոն և ավելի քան 150 տեսակ արդյունաբերական այլ արտադրանքներ: Իր հերթին, անհրաժեշտ արտադրանքների սեփական պահանջմունքները Կիրգիզիան զգալի չափով բավարարում է եղբայրական մյուս հանրապետություններից կատարվող ներմուծումների հաշվին, մշտական տնտեսական կապեր հաստատելով վեց հազար մատակարարների հետ: Կիրգիզիան ստանում է մեքենաներ ու սարքավորում, սև մետաղներ, նավթամթերքներ, շինանյութեր, ժողովրդական սպառման զանազան ապրանքներ:

Կիրգիզիայի էկոնոմիկայի վերելքի համեմատ մեծանում է նրա ավանդը երկրի էկոնոմիկայում, համապետական խնդիրների լուծման գործում: Այդ ավանդն էականորեն մեծացավ իններորդ հնգամյակի տարիներին: Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մտավորականությունը լի են



1974 թվականի ժողովրդա-տնտեսական պլանների գերակատարումն ապահովելու վճռականությամբ և դրանով իսկ արժանավայել դիմավորելու հանրապետության ու Կիրգիզիայի կոմկուսակցության կեսդարյա հոբելյանը:

Հանրապետության արտադրաուժերի և նրա տնտեսական կապերի զարգացման արգասիքներից մեկը բնակչության առավել բազմազգությունն է: Այստեղ, համերաշխ ընտանիքում, ապրում և աշխատում են ավելի քան 80 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ:

Հետզհետե ավելի բազմազգ է դառնում նաև բանվոր դասակարգը: Միաժամանակ, հատկապես վերջին տարիներին, նրա թիվն արագ մեծանում է տեղական ազգության ներկայացուցիչների հաշվին: Ողջ բնակչության կազմում մշտապես աճում է բանվոր դասակարգի տեսակարար կշիռը: 1913 թ. Կիրգիզիայում բանվորների թիվը չէր հասնում մեկ ու կես հազարի: 1937 թ. այն հասավ 26 հազարի: Այժմ բանվոր դասակարգի թիվն անցնում է 600 հազարից:

Բանվոր դասակարգը եղել և մնում է առավել հետևողական ինտերնացիոնալիստ դասակարգը, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության գաղափարների գլխավոր արտահայտիչը: Կիրգիզիայում, ինչպես և սովետական մյուս հանրապետություններում, բանվոր դասակարգի տեսակարար կշռի աճը նպաստում է ինտերնացիոնալ հատկանիշների զարգացմանը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

***

Եղբայրական բազմակողմանի համագործակցության զարգացումը, տըն-
տեսական կյանքի ինտերնացիոնալացումը նպաստում են աշխատավորների
կողմից ինտերնացիոնալիզմի գաղափարների արագ յուրացմանը, նրանց ին-
տերնացիոնալիստական գիտակցության ձևավորմանը: Լենինյան ազգային
քաղաքականության մեծագույն նվաճումն է այն, որ ինտերնացիոնալիզմը
դարձել է սովետական մարդկանց կյանքի անխախտ նորմը: Հասկանալի է, որ
վարքագծի ինտերնացիոնալիստական նորմերն ինքնաբերաբար չեն ամրա-
պնդվել: Այդ պրոցեսի վրա վճռականորեն ազդում է կուսակցության նպա-
տակային գործունեությունը, կուսակցություն, որն աշխատավորներին դաս-
տիարակում է սովետական հայրենասիրության ու պրոլետարական, սոցիա-
լիստական ինտերնացիոնալիզմի ոգով:

Ինտերնացիոնալ դաստիարակությունը կենսագործվում է հետևյալ հիմ-
նական ուղղություններով.

հանրապետության բոլոր աշխատավորների հոգում ձևավորվում է խոր
նվիրվածություն կոմունիզմի մեծ գործին, կոմունիստական կուսակցության
գործին.

դաստիարակվում է սեր սոցիալիստական հայրենիքի՝ Սովետական Սո-
ցիալիստական Հանրապետությունների Միության, սովետական ժողովրդի
նկատմամբ, արմատավորվում հպարտության զգացում ողջ մարդկության
ճակատագրում նրա խաղացած ակնբախ դերի համար.

պարզաբանվում է հանրապետության աշխատավորների ինտերնացիոնալ
և հայրենասիրական պարտքի էությունը, աշխատավորներ, որոնք իրենց
ավանդն են ներդնում կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում.

հանրապետության բազմազգ բնակչության, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների
բարեկամության ու համախմբվածության առավել ամրապնդում.

պայքար՝ նացիոնալիստական վերապրուկների, ազգային սահմանափակ-
վածության, անցյալից ժառանգված վնասակար սովորույթների ու ավանդույթ-
ների դեմ.

ժողովուրդների բարեկամությունը խախտող հակակոմունիզմի գաղափա-
րախոսական դիվերսիաների մերկացում:

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը գըտ-
նըվում են Կիրգիզիայի կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում:

Վերջին տարիներին այդ հարցերն ավելի հաճախ են քննարկվել կուսկոմիտեների պլենումներում, կուսակցական ակտիվի ժողովներում: Այդ աշխատանքի ղեկավարման բարելավման նպատակով 1970 թ. նոյեմբերին Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմն ընդունեց «Հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունն առավել ուժեղացնելու ուղղությամբ» որոշումը, մշակեց կոնկրետ միջոցառումների պլան:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության ոգով աշխատավորների դաստիարակությունն ուժեղացնելու համար վիթխարի նշանակություն ունեցան ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստությունն ու տոնակատարությունը: Մեր երկրի ժողովուրդների կյանքում այդ կարևորագույն պատմական իրադարձության առնչությամբ Կիրգիզիայի կուսկազմակերպությունները կազմակերպական ու քաղաքական լայն աշխատանք ծավալեցին: Գաղափարա-քաղաքական աշխատանքի, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործման հարցը 1972 և 1973 թվականներին քննարկվեց հանրապետական կուսակցական ակտիվի ժողովներում: Ակտիվի ժողովների նյութերում հանրագումարի բերվեց կատարված աշխատանքի դրական փորձը, միջոցներ ձեռնարկվեցին այդ աշխատանքի բարելավման նպատակով:

Մեզ մոտ ստեղծվել է աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության որոշակի սիստեմ: Դրանում կարևոր տեղ է հատկացվում կուսակցական, սովետական և կոմերիտական աշխատողների, պրոպագանդիստների, դասախոսների, ինչպես և մասսաների դաստիարակությամբ զբաղվող բոլոր մարդկանց տեսական պատրաստությանը: Նրանց գաղափարա-քաղաքական մակարդակի բարձրացման նպատակով մեծ ուշադրություն է նվիրվում կուսակցության ազգային քաղաքականության լենինյան սկզբունքների, մեր երկրում ազգային հարցի լուծման փորձի խոր ուսումնասիրմանը:

Ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ամրապնդման պրոբլեմները լայնորեն լուսաբանվում են ագիտատորների դասախոսություններում, զեկուցումներում, քաղինֆորմացիաներում, զրույցներում, մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով:

Կիրգիզիայի օրինակի հիման վրա պրոպագանդվում են կուսակցության լենինյան ազգային քաղաքականության բարերար արդյունքները, ցուցադրվում է ժողովուրդների միասնության ու բարեկամության նշանակությունը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում: Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում ներգրավվում են ձեռնարկությունների, կազմակերպությունների ղեկավարներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, բուհերի դասախոսներ, գիտնականներ:

Հանրապետության կուսկազմակերպությունը կարևոր նշանակություն է տալիս արդի փուլում ազգային հարաբերությունների զարգացման, ազգերի բարգավաճման ու մերձեցման պրոբլեմների ուսումնասիրությանը: Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմը հանրապետության հասարակագետ-գիտնականներին նպատակամղում է բարձրացնելու հետազոտությունների տեսական մակարդակը և գործնական նշանակությունը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բարելավմանը, սոցիալ-տնտեսական կոնկրետ պրոբլեմների լուծմանը նպաստելու նպատակով:

Ազգային հարցի մարքս-լենինյան խոր ուսումնասիրությանը նպաստում են հանրապետությունում կանոնավոր կերպով կազմակերպվող լենինյան ընթերցումները, լենինյան ուրբաթօրյակները, գիտատեխնիկական ու գործնական կոնֆերանսները՝ նվիրված կոմունիստական շինարարության արդի փուլում ազգային հարաբերությունների զարգացման հրատապ հարցերին: Այդ գործում կարևոր դեր խաղաց, մասնավորապես, այս թվականի մայիսին Ֆրունզեում կայացած համամիութենական գիտական կոնֆերանսը՝ «Սովետական ժողովուրդը մարդկանց նոր պատմական հանրություն է» թեմայով: Կոնֆե-



րանսին մասնակցեցին գիտնականներ ու դասախոսներ՝ միութենական բոլոր հանրապետությունների բուհերից, Մոսկվայից, Լենինգրադից:

Մեծ ուշադրություն է նվիրվում մասսայական պրոպագանդային: Հանրապետությունում գործում են ժողովրդական 13 համալսարաններ՝ ինտերնացիոնալ դաստիարակության և ժողովուրդների բարեկամության 52 ֆակուլտետներով: Լավ համբավ են վայելում վերջին տարիներս ստեղծված ինտերնացիոնալ դաստիարակության դպրոցները:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով ծավալված աշխատանքի գլխավոր ուղղություններից մեկը նրանց՝ արտադրական պլանների ու սոցիալիստական պարտականությունների կատարման համար պատասխանատվության զգացումի ձևավորումն է՝ որպես կոմունիզմի համար մղվող պայքարում հայրենասիրական և ինտերնացիոնալ պարտքի հատուցման անհրաժեշտ պայման: Հանրապետությունում բոլոր նախադրյալները կան այդ աշխատանքը խորացնելու և ընդլայնելու համար:

Վիթխարի նշանակություն ունեն սոցիալիստական մրցության կազմակերպումը, առաջավոր արտադրական փորձի պրոպագանդումը: Ավանդույթային է դարձել Կիրգիզիայի և Տաջիկստանի գյուղատնտեսության աշխատողների մրցությունը: Ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի ստուգումն ու արտադրական փորձի փոխանակումը նպաստում են ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործմանը, ամրապնդում սովետական եղբայրական ժողովուրդների բարեկամական կապերը, խթանում հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը:

Կուսակցության պատմական XXIV համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման համար մղվող պայքարում բացահայտվում է Կիրգիզիայի աշխատավորների ինտերնացիոնալ պարտքի խոր ըմբռնումը, հոգատարությունը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման նկատմամբ: Հանրապետությունը հաջողությամբ կատարել է հնգամյակի երեք տարիների պլանը: Ժողովրդական տնտեսության զարգացման սույն թվականի վեցամսյա արդյունքները հավատ են ներշնչում, որ կկատարվեն աշխատավորների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործման նպատակին են ծառայում սովետական ժողովուրդների միջև հոգևոր արժեքների տարեցտարի ընդլայնվող փոխանակումը: Եղբայրական ժողովուրդների կուլտուրայի նվաճումների պրոպագանդման մարզում կարևոր տեղ է գրավում ավանդույթային դարձած արվեստների՝ «Ալա-Տոոյի գարունը» հանրապետական փեստիվալը: Կիրգիզիայի համար հոբելյանական այս թվականին առանձնահատուկ նշանակություն տրվեց փեստիվալի կազմակերպմանը: Խոշոր իրադարձություն էր այդ հանրապետության կուլտուրական կյանքում, սովետական բազմազգ արվեստների նվաճումների ստուգատես, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, նրանց ամրապնդվող միասնության կատարյալ տոն:

Հանրապետությունում մեծ ուշադրություն է նվիրվում ռուսաց լեզվի ուսումնասիրությանը, որպես ազգերի հաղորդակցության միջոցի: Վերջին տարիներին կիրգիզ ազգաբնակչության մեջ անշեղ աճում է ռուսերենին տիրապետողների թիվը: Ռուսաց լեզվի շնորհիվ կիրգիզ ժողովուրդը կարողացավ յուրացնել Մարքսի, Էնգելսի, Լենինի մեծ ուսմունքը, հաղորդակցվել ռուսական ու համաշխարհային կուլտուրայի մեծագույն նվաճումներին:

Հանրապետության կուսկազմակերպությունները մշտական հոգատարություն են ցուցաբերում, որպեսզի կիրգիզ և մյուս ազգությունների աշխատավորական լայն մասսաները հնարավորություն ունենան ուսումնասիրելու ռուսաց լեզուն, բարելավելու դրա ավանդումը դպրոցներում: Այդ հանգամանքն ավելի մեծ չափով է նպաստում երկրի բոլոր եղբայրական ժողովուրդների հետ կիրգիզ ժողովրդի կապերի ուժեղացմանը:

Մեր հանրապետությունում անդուլ պայքար է մղվում անցյալի վերապրուկների դեմ, հատկապես կենցաղում, այնտեղ, ուր դրանք առավել կենսու-

նակ են: Կոմունիստները ջանում են սովետական ողջ ժողովրդի համար ընդհանուր հեղափոխական ու աշխատանքային ավանդույթների հիման վրա, աշխատավորների, հատկապես երիտասարդության դաստիարակության նպատակով արմատավորել նոր, առաջադիմական արարողություններ ու սովորություններ:

Ակտիվ աշխատանք է տարվում բուրժուական գաղափարախոսության— նացիոնալիզմի ու ռևիզիոնիզմի, մարքսիզմ-լենինիզմին խորթ մաոիզմի մերկացման ուղղությամբ: Այդ առանձնապես կարևոր է արդի պայմաններում, երբ բուրժուական գաղափարախոսներն ու ռևիզիոնիստները եռանդուն փորձում են գրոհել սոցիալիզմի գաղափարական հիմքերի վրա, աղճատել լենինյան ազգային քաղաքականության էությունը, ստվերարկել նրա պատմական նվաճումները: Բուրժուական պրոպագանդայի զրպարտչական հերյուրանքները մերկացնելու խնդրում կուսկազմակերպությունները մեծ նշանակություն են տալիս աշխատավորությանը կուսակցության ազգային քաղաքականության լենինյան սկզբունքները պարզաբանելուն. լայնորեն պրոպագանդվում են ՍՍՀՄ ժողովուրդների նվաճումները կոմունիզմի կառուցման գործում, բազմակողմանի ցույց տրվում նոր հասարակարգի առավելությունները:

Նշելով կուսկազմակերպությունների նշանակալի հաջողությունները, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ոլորտում նրանց կուտակած փորձը, մենք, հիրավի, հեռու ենք այն մտքից, թե այս բնագավառում բոլոր խնդիրներն արդեն լուծված են և անհանգստանալու ոչինչ չկա:

Լինում է և այնպես, որ պրոպագանդիստական աշխատանքում սոսկ պարզունակ բացատրություններ են տրվում ինտերնացիոնալ դաստիարակության հարցերին, երբ ժողովուրդների բարեկամության արտահայտություն են համարվում միայն պատվիրակությունների այցելությունները, տասնօրյակների, գիտության և կուլտուրայի օրերի կազմակերպումը և այլն: Միաժամանակ խորությամբ չեն բացահայտվում ինտերնացիոնալիզմի դրսևորումները— այս կամ այն հանրապետության աշխատավորների ավանդը կոմունիզմի կառուցման ընդհանուր գործում, սովետական մարդու՝ իր քաղաքացիական պարտականությունների, սոցիալիստական հանրակեցության ու կոմունիստական բարոյականության կանոնների, ինտերնացիոնալ և հայրենասիրական պարտքի ազիվ, ճշտապահ կատարումը:

Պրոպագանդիստական գործունեության ընթացքում և քաղաքական ագիտացիայում մենք երբեմն անբավարար ենք բացահայտում աշխատանքի սոցիալիստական բաժանման, տնտեսական հաջողություններում յուրաքանչյուր հանրապետության, ինչպես և Կիրգիզստանի տնտեսական կապերի ուժեղացման դերն ու նշանակությունը, բավականաչափ ցայտուն ու համոզիչ չենք ցույց տալիս մեր հանրապետության հաջողությունները՝ որպես սովետական ողջ ժողովրդի ջանքերի արգասիք: Կուսկազմակերպությունները ձգտում են վերացնել այդ թերությունները, բարձրացնել աշխատավորների մարքսլենինյան ինտերնացիոնալ դաստիարակության մակարդակը:

* * *

Կիրգիզ ժողովուրդը լավ է հասկանում, որ իր բոլոր հաջողությունների համար պարտական է կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությանը, նրա հետևողական լենինյան ազգային քաղաքականությանը, ժողովուրդների բարեկամությանն ու փոխադարձ օգնությանը:

Հանրապետության աշխատավորներն իրենց մեծ ու բերկրալի տոնը՝ Կիրգիզական ՍՍՀ և Կիրգիզիայի կոմունիստական կուսակցության 50-ամյակը, դիմավորում են սերտորեն համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, հպարտ նրանով, որ պատկանում են սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքին:

«Политическое самообразование», № 9, 1974.

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ՀՈԳԵՎՈՐ ԸՆԴՀԱՆՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄԵՐՁԵՑՈՒՄԸ

Մ. ԽՈՎԶՈՒԿ, ՅՈՒ. ԼՈՒԿԻՆ

*Սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների ղեկավարների հանդիպման ժամանակ, որը կայացավ Ղրիմում 1973 թ. հուլիսին, հետագա խորհրդակցություններում և հանդիպումներում ընդգծվում էր գաղափարախոսության բնագավառում եղբայրական կուսակցությունների համագործակցության հետագա համակողմանի զարգացման, մարքս-լենինյան տեսության հետագա ստեղծագործական մշակման անհրաժեշտությունը:*

*Մարքսիզմ-լենինիզմը տալիս է արդի դարաշրջանում հասարակական կյանքի տարբեր կողմերի ինտերնացիոնալացման, սոցիալիզմի ժամանակ ազգային հարցի լուծման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման ու զարգացման պրոբլեմների, համաշխարհային սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների ինտերնացիոնալիստական հոգևոր ընդհանրության, էկոնոմիկայի ու քաղաքականության, գաղափարախոսության ու կուլտուրայի բնագավառում սոցիալիստական ազգերի համակողմանի մերձեցման ու համագործակցության հարցերի գիտական լուծումը: Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, լենինյան ազգային քաղաքականության տեսական սկզբունքները իրենց հետագա զարգացումը ստացան ՍՄԿԿ XXIV համագումարի և եղբայրական կուսակցությունների համագումարների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների միջազգային խորհրդակցությունների ու հանդիպումների փաստաթղթերում: Վերջին տարիներին մարքս-լենինյան տեսական միտքը, հենվելով գիտական կոմունիզմի հիմնադիրների ժառանգության և լենինյան քաղաքականության կենսագործման փորձի վրա, հարստացել է սկզբունքային նշանակություն ունեցող գաղափարա-տեսական նոր դրույթներով սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց պատմական նոր հանրության մասին, սովետական մարդու համազգային հպարտության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման գործում ինտերնացիոնալիստականի ու ազգայինի միասնության մասին, սոցիալիստական տնտեսական ինտեգրացման, սոցիալիստական երկրների աճող միասնության և համակողմանի համագործակցության խորացման մասին, կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում խաղաղասեր ուժերի համախմբման մասին:*

*Արդի էտապում սոցիալական երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի հակամարտության պայմաններում հարկ է լուծել կուլտուրայի բնագավառում միջազգային համագործակցության մի շարք հրատապ գիտական պրոբլեմներ ու գործնական հարցեր. միջազգային հրատապ նշանակություն են ձեռք բերում համաշխարհային սոցիալիստական համագործակցության ժողովուրդների գիտության, գրականության, արվեստի, ողջ հոգևոր կուլտուրայի հետագա զարգացման կարևորագույն ասպեկտները:*

# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԱԿԱՆԻ ԵՎ ԱԶԳԱՅԻՆԻ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅՈՒՄ

*Հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը մարքսիզմ-լենինիզմը դիտում է որպես սոցիալական առաջընթացի օբյեկտիվ օրենք։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «մարդկության ամբողջ տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքը շարունակ ավելի ինտերնացիոնալացվում է արդեն կապիտալիզմի օրոք։ Սոցիալիզմն այն ինտերնացիոնալացնում է ամբողջովին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 19, էջ 294)։*

*Հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը որպես կոմպլեքսային երևույթ, որը պայմանավորված է ո՛չ միայն արտադրաուժերի առաջընթացով, այլև արտադրահարաբերությունների զարգացմամբ, սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում ունի սկզբունքորեն տարբեր սոցիալ-դասակարգային բովանդակություն։ Կապված լինելով արտադրության կենտրոնացման ու համակենտրոնացման հետ, հասարակական կյանքի ինտերնացիոնալացումը իմպերիալիզմի ժամանակ չի կարող զարգանալ առանց անտագոնիստական հակասությունների, բախումների, ցնցումների՝ ինչպես տնտեսական ու քաղաքական ոլորտներում, այնպես էլ ազգամիջյան հարաբերությունների բնագավառում և կուլտուրայի ոլորտում։ Շահագործողական ճնշումը, իմպերիալիզմի զավթողական, գաղութային քաղաքականությունը խորացնում են ժողովուրդների տարանջատումը, հարուցում շովինիզմ ու ռասայականություն, ազգամիջյան թշնամանք։*

*Այլ է սոցիալիզմի օրոք։ Սոցիալիստական երկրներում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պայմաններում ստեղծվում և իրականացվում են անհրաժեշտ նախապայմաններ բոլոր ազգերի ու ազգությունների հոգևոր ընդհանրության զարգացման, կուլտուրաների մերձեցման և փոխադարձ հարստացման համար։*

*Դեռ 1916 թ. Լենինը գրել է. «Սոցիալիզմի ժամանակ աշխատավոր մասսաներն իրենք ոչ մի տեղ չեն համաձայնի մեկուսացման զուտ տնտեսական... դրդապատճառներով, իսկ քաղաքական ձևերի բազմազանությունը, պետությունից դուրս գալու ազատությունը, պետական շինարարության փորձը՝ այս ամենը կլինի, մինչև որ մահանա ամեն մի պետություն ընդհանրապես, կուլտուրական հարուստ կյանքի հիմքը, ազգերի հոժարակամ մերձեցման ու միաձուլման պրոցեսի արագացման առհավատչյան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 22, էջ 457)։*

*Պատմական փորձը լիովին հաստատում է լենինյան հանճարեղ կանխատեսման ճշմարտացիությունը։ Այժմ ո՛չ միայն տեսականորեն, այլև գործնականում, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների փորձով աշխատավորներն առավել համոզվում են, որ սոցիալիզմի և կոմունիզմի ուղին որոշվում է բոլոր երկրների համար ընդհանուր օրինաչափություններով։ Սոցիալիստական սիստեմի մեջ մտնող ազգերի հասարակական, ինչպես և հոգևոր կյանքի պլանաչափ, գիտակցական ինտերնացիոնալացման պրոցեսների զարգացման հիմքում ընկած են՝ արտադրության ընդհանուր սոցիալիստական եղանակը, միատիպ սոցիալիստական արտադրական և հասարակական այլ հարաբերությունները, բանվոր դասակարգի ղեկավար դերը, սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում եղբայրական երկրների կողմից լուծվող խնդիրների համամասնությունը։ Այդ պրոցեսների գաղափարական ընդհանուր աղբյուրն է ինտերնացիոնալիստական սոցիալիստական գաղափարախոսությունը, որը խարսխվում է մարքսիզմ-լենինիզմի գիտական հիմքի վրա։*

*Սոցիալիզմի կառուցման ու ամրապնդման ընթացքում զարգանում է միջազգային բանվոր դասակարգի, սոցիալիստական հասարակական հարաբերություններ ստեղծող և հաստատող ժողովուրդների սկզբունքորեն նոր, ազգային ձևերով բազմազան, բայց դասակարգային, պրոլետարական ակունքներով, մարքս-լենինյան գաղափարական հիմքերով ու սոցիալիստական բովանդակությամբ միասնական, ինտերնացիոնալ կուլտուրան։ Խոսելով, մաս-*



*նավորապես, լեհ բանվոր դասակարգի մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը Կատովիցե քաղաքում ունեցած իր ելույթում ընդգծեց. «Նրա մարքս-լենինյան գաղափարախոսությունը, հումանիստական համոզմունքները, բարոյականությունը անսահման հարստացրել են ժողովրդի հոգևոր արժեքները։ Հենց բանվոր դասակարգն է նոր կյանք ներշնչել ազգային կուլտուրային, այն դարձրել իսկական հայրենասիրական և դրա հետ մեկտեղ՝ խորապես ինտերնացիոնալիստական»։*

*Համաշխարհային սոցիալիստական համագործակցության պայմաններում սոցիալիզմի երկրների կուլտուրական համագործակցությունը ձեռք է բերում որակապես այլ բովանդակություն՝ սոցիալիստական սիստեմից դուրս գտնվող ազգերի ու ազգությունների կուլտուրական հաղորդակցման համեմատությամբ, կապիտալիստական երկրների և «երրորդ աշխարհի» երկրների հետ սոցիալիստական երկրների կուլտուրական կապերի ու շփումների համեմատությամբ։ Որակապես նոր այդ բովանդակությունն այն է, որ զարգանում ու հաստատվում է սոցիալիստական կուլտուրաների ինտերնացիոնալիստական միասնությունը՝ իրենց ազգային բազմազանության մեջ։ Սոցիալիստական կուլտուրաներից յուրաքանչյուրը սոցիալիստական կարգի ստեղծման ու ամրապնդման պրոցեսում զարգանում է ինքնուրույն, ազգային-պետական շրջանակներում, լայնորեն օգտագործելով և շարունակելով իրենց ժողովուրդների նախընթաց կուլտուրայի լավագույն ավանդույթներն ու ժառանգությունը, նրանց լեզուն՝ զարգացնելու համար ազգի հոգևոր պոտենցիալը։*

*Եվ դրա հետ մեկտեղ սոցիալիզմի պայմաններում ազգային կուլտուրաների իսկական ծաղկումը հնարավոր է դառնում ժողովուրդների ինտերնացիոնալիստական ընդհանրության և նրա կողմից ստեղծվող կուլտուրայի շնորհիվ, մի հանգամանք, որն օրգանապես հատուկ է սոցիալիզմին։ Կուլտուրայի նվաճումները դառնում են աշխատավորների լայն զանգվածների սեփականությունը, որոնք սոցիալիզմի պայմաններում լիովին հանդես են գալիս ո՛չ միայն որպես կուլտուրայի տարածման օբյեկտ, այլև որպես նրա սուբյեկտ, նրա գիտակից պատմական ստեղծագործական շարժիչ ուժ։ Յուրաքանչյուր ազգի աշխատավորներից ստեղծվում է սոցիալիստական նոր ինտելիգենցիա, հաղթահարվում է ազգերի նախկին անհավասարությունը նաև կուլտուրայի բնագավառում։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի միասնական հիմքի վրա զարգանում և հաստատվում է տարբեր ազգերի սոցիալիստական հոգևոր ընդհանրությունը։ Սոցիալիզմի պայմաններում ստեղծվում են անհրաժեշտ բոլոր նախադրյալները սոցիալիստական կուլտուրաների իսկական փոխադարձ հարստացման համար, իմպերիալիզմի և ռեակցիայի ճնշումից ազատագրված ազգերի ու ազգությունների գիտական ու կուլտուրական իրավահավասար համագործակցության համար։*

*Հոգևոր կուլտուրաների փոխադարձ շփումն ու փոխազդեցությունը նույնքան հին երևույթներ են, որքան իրենք՝ կուլտուրան ու քաղաքակրթությունը։ Այդ պրոցեսը միշտ ընթացել է հակասականորեն ու անհավասարաչափ, ինչպես տարբեր ազգերի կուլտուրաների զուգահեռ շփման ձևով («հորիզոնական կապեր»), նույնպես և ողջ կուլտուրայի զարգացման պատմական ժառանգորդության ձևով («ուղղահայաց կապեր»)։ Այդ պրոցեսը կրում է դիալեկտիկական բնույթ՝ այն օբյեկտիվ դիալեկտիկային համապատասխան, որը հատուկ է ամբողջ հասարակության կյանքին։*

*Ազգի հսկայական մեծամասնությունը կազմող աշխատավորների սոցիալական ազատագրության համար մղվող դասակարգային պայքարի պրոցեսում բանվոր դասակարգն սկսում է ստեղծել իր ինտերնացիոնալիստական, սոցիալիստական կուլտուրան։*

*Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծմամբ ու զարգացմամբ պատմականորեն սկսվեց որակապես նոր էտապ ինտերնացիոնալիստական պրոլետարական կուլտուրայի զարգացման մեջ, որի տարրերը ծագում են կապիտալիզմի ընդերքում և գաղափարապես արգասավորվում մարքսիզմով՝ պրոլետարական*

կուլտուրայի կարևորագույն տարրով։ Պատմության մեջ առաջին անգամ սովետական սոցիալիստական ազգերը բանվոր դասակարգի գլխավորությամբ և կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կառուցեցին սոցիալիզմ և կառուցում են կոմունիզմ, կազմակերպելով համատեղ նյութական ու հոգևոր արտադրությունը՝ միասնական բազմազգ սոցիալիստական պետության շրջանակներում։

Ամեն մի ազգի կուլտուրայի մեջ նրա զարգացման յուրաքանչյուր կոնկրետ պատմական էտապում սինթետիկորեն արտացոլված է նրա ամբողջ պատմությունը, նրա ամբողջ կուլտուր-պատմական փորձը, որը հանդես է գալիս քիչ թե շատ կայուն ազգային հոգևոր ավանդույթների ձևով։ Կապիտալիզմի ճնշումից ազատագրված ազգերի սոցիալիստական կուլտուրայի ձևավորումը խարսխվում է ամենից առաջ մարքսիստական աշխարհայացքի գաղափարական հողի վրա, որն արտահայտում է միջազգային հեղափոխական պրոլետարիատի արմատական շահերը, դրա հետ միասին հենվում ժողովրդի ամբողջ հոգևոր պատմության, հատկապես նրա դեմոկրատական ու սոցիալիստական տարրերի վրա։ Բովանդակությամբ սոցիալիստական և իր ոգով ու բնույթով ինտերնացիոնալիստական նոր կուլտուրան զարգանում է կոնկրետ-պատմական ազգային ձևով։

Ազգային կուլտուրական ժառանգության ուսումնասիրումն ու յուրացումը, ազգային հոգևոր առաջադիմական ավանդույթների վերածնումը, շարունակումն ու զարգացումը սոցիալիստական համագործակցության երկրներում իրականացվում են դասակարգային դիրքերից, մարքս-լենինյան գաղափարախոսության հիման վրա, մարքսիստական գիտության հայտնագործած կուլտուրայի պատմության տեսական սկզբունքների ու չափանիշների օգնությամբ։ Մարքս-լենինյան կուսակցությունները, որոնք ուղղություն են տալիս սոցիալիստական կուլտուրայի զարգացմանը, հաշվի են առնում ազգային հոգևոր ավանդույթների յուրահատկությունը և դրա հետ մեկտեղ ընդգծում, որ առաջավոր ավանդույթները ներառնում են ոչ միայն ազգային առանձնահատուկը, այլև ընդհանուր, առաջադիմական համամարդկային ժառանգությունը, նրա այն արժեքները, որոնք ստեղծվել են ժողովրդական զանգվածների ազատագրական դեմոկրատական պայքարի, բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական հեղափոխական պայքարի պրոցեսում, սոցիալիզմի կառուցման ընթացքում։ Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում կուլտուրական ժառանգության յուրացման ու վերամշակման աշխատանքը շնչավորվում է, ինչպես նշում էր Լենինը, պրոլետարիատի դիկտատուրայի պրակտիկ փորձով։

Սոցիալիզմի զարգացման ընթացքում որոշ չափով փոփոխությունների է ենթարկվում նաև ինքը՝ վերաբերմունքը դեպի մինչսոցիալիստական դարաշրջանների հոգևոր արժեքները. սոցիալիզմի պայմաններում անընդունելի են ոչ միայն անցյալի հոգևոր կյանքի խիստ ռեակցիոն տարրերն ու ավանդույթները, այլև նախորդ դարաշրջանների կուլտուրայի ու կենցաղի հնացած, անցյալում իրենց դրական դերը կատարած, բայց արդեն իրենց սպառած ավանդույթներն ու պատմականորեն անցողիկ կողմերը։

Մարքս-լենինյան կուսակցություններն իրենց որոշումներում և փաստաթղթերում ընդգծում են յուրաքանչյուր ժողովրդի պատմության ու կուլտուրայի, նրա ավանդույթների նկատմամբ հետևողական դասակարգային ու ինտերնացիոնալիստական մոտեցման անհրաժեշտությունը, գիտականորեն հիմնավորված քննադատության են ենթարկում նահանջներն այդ դիրքերից, դատապարտում են գրականության մեջ, առանձին գիտական աշխատություններում ազգերի ու նրանց կուլտուրաների զարգացման պրոցեսները դրանց կոնկրետ-պատմական դասակարգային բովանդակությունից կտրված, միակողմանիորեն և այդ պատճառով էլ ոչ ճիշտ լուսաբանելու դեռևս հանդիպող փաստերը, արդի դարաշրջանում այդ զարգացումը գլխավոր ուղղությունից՝ իմպերիալիզմի դեմ միջազգային բանվոր դասակարգի, սոցիալիստական համագործակցության մղած համաշխարհային-պատմական պայքարից, մեկուսացնելու փորձերը։



Քննադատելով տիրապետող դասակարգերն ու նրանց կուլտուրան, անցյալի հոգևոր կյանքի կրոնական, իդեալիստական և այլ հակագիտական հոսանքները գունազարդելու և գովաբանելու տենդենցները, մարքս-լենինյան կուսակցությունները ղեկավարվում են Լենինի այն դրույթով, որ միայն սոցիալիզմն է իսկական ասպարեզ բացում ամենալայն ժողովրդական զանգվածների գիտակցական պատմական ստեղծագործության համար, վերացնում է ազգային խտրականության բոլոր ձևերը, ռեալ հիմքեր ստեղծում յուրաքանչյուր ազգի ու ազգության կուլտուրաների իսկական ծաղկման համար։

Սոցիալիզմի դարաշրջանում ազգային կուլտուրայի իսկական առաջընթացը, նրա մնայուն արժեքների ստեղծումը կապված են գլխավորապես կուլտուրայի ընդհանուր սոցիալիստական ինտերնացիոնալ բովանդակության հետ, որով ավելի ու ավելի է հագեցվում աշխատավորների հոգևոր կյանքը, և ամենից առաջ այդ կուլտուրայի մեջ յուրաքանչյուր ազգային կուլտուրան բնութագրող սկզբունքորեն նոր, սոցիալիստական գծերի ունեցած տեսակարար կշռի հետ։ Բազմապիսի ազգային ձևերով, ազգային հողի վրա ինտերնացիոնալ սոցիալիստական կուլտուրայի ստեղծումը փոխում է ազգային բուն բովանդակությունը, որը, հենվելով պրոլետարական, սոցիալիստական ու դեմոկրատական ժառանգության վրա, գնալով ավելի հարաճուն չափով իր մեջ ընդգրկում է ազգային կյանքի այն նորը, որը ձեռք է բերվում արդեն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում և հատկապես հաղթանակած սոցիալիզմի պայմաններում։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ժողովուրդների սոցիալիստական կուլտուրաների զարգացման մեջ, այդ ժողովուրդների կողմից հոգևոր ժառանգության յուրացման և դրա հետագա ստեղծագործական զարգացման ընթացքում դիալեկտիկորեն փոխներգործում և «միահյուսվում» են երկու փոխադարձաբար կապված պրոցեսներ։ Մի կողմից, «ուղղահայաց կանալներով» սոցիալիստական կուլտուրան ընկալում և վերամշակում է կապիտալիստական հասարակության կուլտուրական ժառանգության առաջադիմական տարրերն ու այդ կուլտուրաների արժեքավոր նվաճումները։ Մյուս կողմից, «հորիզոնական կանալներով» սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի կուլտուրայի գանձարանն են ներհոսում սոցիալիզմի մյուս երկրների գիտության ու տեխնիկայի, կուլտուրայի և արվեստի փորձն ու նվաճումները, կապիտալիզմի երկրների բանվոր դասակարգի, աշխատավորների, հեղափոխական ինտելիգենցիայի, ինչպես նաև «երրորդ աշխարհի» երկրների ազատագրված ժողովուրդների ստեղծած սոցիալիստական ու դեմոկրատական կուլտուրաների տարրերը։ Սոցիալիստական կուլտուրան «հորիզոնական կանալներով» իր մեջ է ներծծում և աշխատանքի միլիոնավոր մարդկանց շահերի համար օգտագործում ու զարգացնում համաշխարհային գիտության նորագույն նվաճումները, մնայուն գեղարվեստական արժեքները, ինչպես նաև ժամանակակից մարդկության հոգևոր կուլտուրայի «նյութական բազայի» համամարդկային տարրերը (օրինակ, հեռուստատեսության, ռադիոհաղորդման և հոգևոր հաղորդակցման այլ միջոցների նվաճումները, որոնք կապված են գիտատեխնիկական հեղափոխության հետ)։

Սոցիալիստական ազգերի ու նրանց կուլտուրաների ծաղկումը, նրանց հոգևոր կյանքի մերձեցումն ու հետագա ինտերնացիոնալացումը, ինտերնացիոնալիստականի և ազգայինի դիալեկտիկական փոխներթափանցումը սոցիալիստական կուլտուրայի մեջ ամենևին չեն նշանակում «ազատում» ազգայինից, հրաժարում կուլտուրական զարգացման ազգային ձևերից։ Սոցիալիզմի երկրների հոգևոր ոլորտում տեղի ունեցող պրոցեսները նշանավորում են ազգային կյանքի ու կուլտուրայի բնական, օրինաչափ և առաջընթաց «հագեցում» ինտերնացիոնալ բովանդակությամբ, հետևաբար՝ ազգային կուլտուրաների հարստացում։ Սոցիալիզմի պայմաններում, հատկապես զարգացած, հասուն սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման ստադիայում, պատմության մեջ առաջին անգամ իրականություն են դառնում յուրաքանչյուր ազգային կուլտուրայի ծաղկման հսկայական պոտենցիալ հնարավորությունները։

Ճիշտ այնպես, ինչպես կապիտալիստական ճնշումից ազատագրված ամեն մի ժողովրդի ժողովրդական տնտեսության հաջող զարգացումն ու հասարակական հարաբերությունների կատարելագործումը, համակողմանի նյութական ու սոցիալական առաջընթացը համապատասխանում են ոչ միայն նրա շահերին, այլև համաշխարհային սոցիալիզմի ընդհանուր գործի շահերին, այդպես էլ յուրաքանչյուր ազգային կուլտուրայի ծաղկումը իսկական ինտերնացիոնալ, սոցիալիստական հիմքի վրա համապատասխանում է տվյալ ազգի, միջազգային բանվոր դասակարգի, ամբողջ համաշխարհային սոցիալիզմի շահերին։ Մեր ժամանակներում յուրաքանչյուր ժողովրդի ապագան անբաժանելի է ամբողջ աշխարհում սոցիալիզմի համար մղվող պայքարի հաջողություններից։ Այն անբաժանելի է ինտերնացիոնալ սոցիալիստական հոգևոր կուլտուրայի ծաղկումից՝ նրա ազգային ձևերով, միջազգային բանվոր դասակարգի գաղափարախոսության ստեղծագործական զարգացումից ու տարածումից, այն բանից, թե սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի հոգևոր կյանքը ինչ չափով է համակողմանիորեն զարգանալու ինտերնացիոնալ սկզբունքներով, ստեղծագործաբար կուտակելով սոցիալիզմի մյուս երկրների ժողովուրդների պատմական փորձը և փոխադարձաբար հարստանալով նրանց ստեղծած գիտական և կուլտուրական արժեքներով։

Արդի պատմական էտապում սոցիալիստական ազգերի կուլտուրաների արգասավոր ու խոր փոխներգործության առանձնահատկությունն այն է, որ ազգային հոգևոր, գաղափարական-տեսական ու գեղարվեստական արժեքները, որոնք սոցիալիստական, ինտերնացիոնալիստական են իրենց բովանդակությամբ և իրենց բնույթով, հետզհետե ավելի շատ են ներհոսում ամբողջ սոցիալիստական համագործակցության կուլտուրական գանձարանը, դրանով իսկ հիմքեր ստեղծելով կոմունիստական համամարդկային կուլտուրայի ձևավորման ու զարգացման համար։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՀԵՏԱԳԱ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Սոցիալիստական կուլտուրայի տեսական պրոբլեմների ու գործնական հարցերի մշակման հրատապությունը պայմանավորվում է այն բանով, որ մեր օրերում, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը Մոսկվա քաղաքի Բաումանյան շրջանի ընտրողների առջև արտասանած իր ճառում, հասարակական առաջընթացի տեմպերը, դեպի կոմունիզմ մեր առաջշարժման տեմպերը ավելի ու ավելի նկատելիորեն են պայմանավորվում հասարակության ինտելեկտուալ պոտենցիալով, կուլտուրայի, գիտության, կրթության զարգացումով։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության ամրապնդման, Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետևողական խաղաղասիրական քաղաքականության շնորհիվ մեր դարի յոթանասունական թվականները բնութագրվում են նորանոր հաջողություններով՝ սոցիալիստական գաղափարախոսության ու կուլտուրայի զարգացման և բուրժուական գաղափարախոսության դեմ նրանց մղած պայքարի գործում։

Սոցիալիստական համագործակցության ազգերի կուլտուրաների, հոգևոր կյանքի զարգացումն ու մերձեցումը կանխորոշող գործոններն են.

— երկրների տնտեսական բազիսի, սոցիալական կառուցվածքի և քաղաքական կազմակերպության աճող ընդհանրությունը, միջազգային լարվածությունը մեղմացնելու և առաջադիմական, խաղաղասեր ուժերը համախմբելու նպատակին ուղղված նրանց արտաքին քաղաքականության սկզբունքային միասնությունը.

— բանվոր դասակարգի գլխավորած աշխատավորների դասակարգային շահերի ընդհանրությունը, նրանց համախմբումը սոցիալիստական ազգերի, համաշխարհային սոցիալիստական համագործակցության շրջանակներում՝ սոցիալիստական և կոմունիստական հասարակարգ կառուցելու, բոլոր աշխատավորների և յուրաքանչյուր մարդու նյութական բարեկեցության բարձրացման



ու համակողմանի ներդաշնակ զարգացման համար պայմաններ ստեղծելու նպատակով.

— սոցիալիստական համագործակցության ժողովուրդների համար միասնական մարքս-լենինյան աշխարհայացքը, որը որոշում է նրանց սոցիալիստական կուլտուրաների հիմնական գաղափարական բովանդակության ընդհանրությունը.

— կոմունիստական և բանվորական կուսակցությունների ղեկավար դերը սոցիալիզմի երկրների սոցիալիստական հասարակական գիտակցության, գիտության, արվեստի, հոգևոր կուլտուրայի բոլոր տեսակների զարգացման գործում.

— սոցիալիստական կուլտուրաների զարգացման գործում մարքս-լենինյան կոմունիստական գաղափարայնության, կուսակցականության և ժողովրդայնության սկզբունքների հետևողական կիրառումը, որոնք կոչված են ծառայելու միջազգային բանվոր դասակարգի, սոցիալիզմի կառուցման գործին, բոլոր աշխատավորների շահերին.

— սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, սոցիալիզմ և կոմունիզմ կառուցողների ինտերնացիոնալ հպարտության զգացմունքի զարգացումը, անհաշտ պայքարը հակակոմունիզմի գաղափարախոսության դեմ, շովինիզմի ու ռասայականության, նացիոնալիզմի, ազգային մեկուսացման ամեն մի դրսևորման դեմ.

— սոցիալիստական ապրելակերպը և կոմունիստական բարոյականության ձևավորումը, որոնք ստեղծվում են նոր աշխարհի կառուցման պրոցեսում, սոցիալիստական արտադրահարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիզմի, կոլեկտիվիզմի և «մեկը՝ բոլորի համար, բոլորը՝ մեկի համար» սկզբունքով ընկերական փոխօգնության զարգացման ընթացքում.

— ազգային կուլտուրաներից յուրաքանչյուրի լավագույն, սոցիալիստական ու դեմոկրատական ավանդույթների զարգացումն ու շարունակումը, ինտերնացիոնալ սոցիալիստական և ամբողջ համաշխարհային կուլտուրայի հարստացումը սոցիալիստական համագործակցության ամեն մի ժողովրդի հոգևոր և գեղարվեստական արժեքներով.

— տարբեր ազգերի կուլտուրական արժեքների պարզ փոխանակումից աստիճանական անցում սոցիալիստական երկրների կուլտուրական-գաղափարախոսական գործունեության կոորդինացման, սոցիալիստական համագործակցության ազգերից յուրաքանչյուրի ավելի սիստեմատիկ ու համակողմանի հոգևոր հարստացման՝ սոցիալիստական մյուս ազգերի նվաճումներով, ընդհանուր խնդիրները լուծելու համար, սոցիալիստական տարբեր երկրների գիտության և կուլտուրայի գաղափա-տեսական պոտենցիալի միավորման միջոցով համատեղ «հոգևոր արտադրության»։

Սոցիալիստական ազգերի կուլտուրաների հետագա ծաղկման ու մերձեցման նյութական հիմքն է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրի իրականացումը Տնտեսական Փոխօգնության Խորհրդի շրջանակներում, ծրագիր, որի նպատակն է սոցիալիստական ազգային տնտեսությունները զարգացնել դրանց ինտերնացիոնալ համագործակցության հիման վրա, բարձրացնել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ողջ տնտեսական հզորությունը, ապահովել կապիտալիզմի համաշխարհային սիստեմի հետ նրա պատմական մրցության մեջ հաղթանակը։

Սոցիալիստական երկրների եղբայրական կուսակցությունների համագումարների ու կենտկոմների պլենումների որոշումներում մշակվում են հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետագա զարգացման և ժողովուրդների բարեկամության ամրապնդման պրոբլեմները՝ հաշվի առնելով ազգային ու պատմական առանձնահատկությունները։ Այդ որոշումներում արտացոլվում են բուրժուական գաղափարախոսության, ռեֆորմիզմի, ռևիզիոնիզմի ու նացիոնալիզմի դեմ մղվող պայքարի ուժեղացումը, կոմունիստական հասարակության գիտակից կառուցողների աշխարհայացքի ձևավորման ակտիվ պրոցեսը, սոցիալիստական ապրե-

լակերպի ու կոմունիստական բարոյականության հաստատումը, որոնք հակադրվում են «մասսայական սպառման հասարակության» բուրժուա-ինդիվիդուալիստական կոնցեպցիաներին, գաղափարազրկությանը, պեսիմիզմին, ցինիզմին, անբարոյականությանը և կապիտալիստական հասարակության ժամանակակից կուլտուրայի հոգևոր այլ «թույներին» և «նարկոտիկներին»:

Գաղափարախոսության բնագավառում ընդհանուր կուրսի մշակմանը նպաստում են սոցիալիստական երկրների կուսակցությունների ու կառավարությունների ղեկավարների սիստեմատիկ հանդիպումները: Այսպես, հանդիպման ժամանակ, սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների կենտկոմների քարտուղարների՝ 1973 թ. ամռանը Ղրիմում, 1973 թ. դեկտեմբերին և 1974 թ. հունվարին Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցություններում ցուցադրվեց հայացքների միասնությունը քաղաքական, տնտեսական և գաղափարախոսական բնագավառում համագործակցության հետագա ամրապնդման հարցերի վերաբերյալ:

Ելույթ ունենալով Լեհական Ժողովրդական Հանրապետության սեյմի՝ Լեհաստանի վերածննդի երեսնամյակին նվիրված հանդիսավոր նիստում՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց, որ վերջին տարիներին նկատելիորեն ամրապնդվում է եղբայրական կուսակցությունների համագործակցությունը գաղափարախոսության բնագավառում: Գաղափարախոսության հարցերում կոմունիստներն ունեն միասնական գլխավոր գիծ: «...Գաղափարական միասնության ամրապնդումը, մարքսիզմ-լենինիզմից, սոցիալիստական ինտերնացիոնալիզմից ամեն մի նահանջի դեմ պայքարի լենինյան սկզբունքների հետևողական պահպանումը,— ընդգծվում էր ելույթում,— ...մեր ընդհանուր մշտական պարտականությունն է, մեր պարտքը սոցիալիզմի երկրների աշխատավորների հանդեպ, համաշխարհային բանվոր դասակարգի հանդեպ»:

Սոցիալիստական շինարարության տարբեր բնագավառներում եղբայրական կուսակցությունների ու երկրների համատեղ գործողությունները տեսության ու պրակտիկայի միասնության լենինյան սկզբունքի կենսագործման ակնառու օրինակ են: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի բուն փաստը և սոցիալիստական շինարարության հաջողությունները արդի դարաշրջանի արմատական պահանջմունքներն արտահայտող լենինիզմի պատմական ճշմարտացիության ակնառու ապացույցն են:

Գիտության և կուլտուրայի ոլորտում սոցիալիստական երկրների գաղափարական աճող ընդհանրության վառ օրինակներից մեկն է փիլիսոփայության, պատմական, տնտեսական, իրավաբանական գիտությունների, գրականագիտության, գիտության տեսության և գիտելիքների այլ բնագավառներում գիտնականների ընդլայնվող ու խորացող համագործակցությունը՝ համատեղ հետազոտությունների, սիմպոզիումների, գիտա-տեսական կոնֆերանսների, «կլոր սեղանի» շուրջը հանդիպումների, ընդհանուր աշխատություններ ստեղծելու, միջազգային ասպարեզում համատեղ գաղափարա-տեսական ակցիաների միջոցով:

Համագործակցության գնահատելի փորձը, որ կուտակել են ԲԺՀ-ի և ՍՍՀՄ-ի, ԳԴՀ-ի և ՍՍՀՄ-ի հասարակագետ գիտնականները, ճանաչում է գտել ու կիրառվում է դրա հետագա խորացման համար: Նման կոլեկտիվ «հոգևոր արտադրությունն» արդեն տալիս է իր շոշափելի արդյունքները: Սոցիալիստական երկրների մարքսիստների համատեղ ջանքերով (ինչպես նաև կապիտալիստական երկրների մի շարք մարքսիստների մասնակցությամբ) պատրաստվել են տեսական խոշոր աշխատություններ. Լենինիզմը և համաշխարհային հեղափոխական պրոցեսը (Պրագա, 1970), Ֆ. Էնգելսը և մարքսիզմի փիլիսոփայության ժամանակակից պրոբլեմները (Մոսկվա, 1971), բուլղարա-սովետական հետազոտությունները— Արտացոլման լենինյան տեսությունը և ժամանակակից գիտությունը (Սոֆիա, 1973) եռահատոր աշխատությունը, Լենինիզմը, փիլիսոփայության պատմությունը և արդիականությունը (Սոֆիա, 1972), Ժամանակակից աջ ռևիզիոնիզմը: Քննադատական վերլուծություն (Մոսկվա—Պրագա, 1973) սովետա-չեխոսլովակյան աշխատությունը, Զար-



գացման ոչ կապիտալիստական ուղին և Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության փորձը (Մոսկվա, 1971) սովետա-մոնղոլական կոլեկտիվ մենագրությունը և այլն: Վերջերս լույս տեսավ սովետական ու չեխոսլովակյան փիլիսոփաների ու սոցիոլոգների պատրաստած Մարդ—գիտություն—տեխնիկա (Մոսկվա, 1973) կոլեկտիվ աշխատությունը:

Հասուն սոցիալիստական հասարակության կազմավորման ու ձևավորման տարբեր ասպեկտների համատեղ ուսումնասիրության արդյունքը եղավ ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի հասարակագետ գիտնականների ուժերով և սոցիալիստական մյուս երկրների գիտնականների մասնակցությամբ պատրաստված Զարգացած սոցիալիստական հասարակություն. էությունը, հասունության չափանիշները, ռևիզիոնիստական կոնցեպցիաների քննադատությունը կոլեկտիվ մենագրությունը, որը 1973 թվականին գերմաներեն լույս տեսավ Բեռլինում և ռուսերեն՝ Մոսկվայում:

Ներկայումս ընդլայնվում են սոցիալիստական երկրների հասարակական գիտությունների գործիչների համատեղ աշխատանքը խորացնելու, նրանց բազմակողմանի համագործակցության հետագա միջոցառումներ կազմակերպելու ռեալ հնարավորությունները:

Եղբայրական սոցիալիստական երկրները մեծ փորձ են կուտակել նաև բնագիտության ու տեխնիկայի պրոբլեմների համատեղ մշակման գործում (միջուկային ֆիզիկա, էներգետիկա, տիեզերքի հետազոտություն):

Հասարակական գիտությունների, գրականության և արվեստի, հոգևոր կուլտուրայի ոլորտում այդ պրոցեսը, իհարկե, ընթանում է ավելի յուրահատուկ ու բարդ ձևով, քան բնական ու տեխնիկական գիտությունների բնագավառում: Այնուհանդերձ, այստեղ ևս պայմաններ կան համագործակցության որակապես նոր փուլի անցնելու, հասարակագիտության տարբեր ճյուղերում, գրականության ու արվեստի, բառիս լայն իմաստով՝ հոգևոր կուլտուրայի բնագավառում եղբայրական երկրների գիտնականների ստեղծագործական ջանքերի միավորման համար:

Եղբայրական սոցիալիստական երկրների համագործակցությունը մեծ մասշտաբներով իրականացվում է լուսավորության ու կրթության բնագավառում: Այստեղ կարևոր տեղ է գրավում կադրերի փոխադարձ պատրաստումը՝ գործունեության տարբեր բնագավառների համար մասնագետների պակասը լրացնելու նպատակով: Միայն 50-ական թվականներից մինչև 70-ական թվականների սկիզբը սոցիալիստական մյուս երկրներից ՍՍՀՄ-ում պատրաստվել են ավելի քան 50 հազար բարձրորակ մասնագետներ:

Կրթության և գիտության բնագավառում համագործակցության ծավալն անշեղ ընդլայնվում է: Էականը ո՛չ միայն դրա քանակական աճն է, այլև որակական կատարելագործումը, կրթության դերի բարձրացումը սոցիալական այնպիսի մասշտաբային խնդիրների լուծման գործում, ինչպիսիք են՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը սոցիալիզմի առավելություններին, սոցիալիստական տիպի անհատի ձևավորումը, համակողմանի զարգացած մարդկանց՝ կոմունիզմ կառուցողների պատրաստումը:

Կրթության ծաղկման և սոցիալիստական համագործակցության երկրների հոգևոր կուլտուրայի զարգացման գործում նրա դերի բարձրացմանը բնորոշ են ընդհանուր միջնակարգ կրթության իրականացումը, ուսուցման միացումը արտադրողական աշխատանքի հետ, լավ կրթված ու գաղափարապես կոփված բանվորների ու ինժեներա-տեխնիկական կադրերի պատրաստումը (որը հանգեցնում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև սահմանների վերացման), սոցիալիստական մյուս երկրների գիտության ու կուլտուրայի նվաճումների, նրանց բազմակողմանի փորձի սիստեմատիկ ու խոր ուսումնասիրությունը:

Կրթության բնագավառում եղբայրական երկրների կողմից լուծվող խնդիրների սկզբունքորեն ընդհանուր բնույթը, դրանց նորությունն ու բարդությունը, կրթության սիստեմների կազմակերպման ու կառավարման մեթոդնե-

րի և ձևերի մոտիկությունը թելադրում են այդ ոլորտում համատեղ ջանքերի ավելի խոր կոորդինացման անհրաժեշտություն, նախադրյալներ են ստեղծում կրթության սիստեմների կատարելագործման և այդ բնագավառում կոոպերացման կոմպլեքսային ծրագրի մշակման համար։

Էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի բնագավառում, սոցիալ-քաղաքական զարգացման գործում ձեռք բերված նվաճումների հետ մեկտեղ, սոցիալիստական աշխարհի ժողովուրդների ընդհանուր, ինտերնացիոնալ հպարտության առարկա են սոցիալիստական երկրների գրականության ու արվեստի աչքի ընկնող երկերը։ Սոցիալիստական արվեստի հանճարեղ ստեղծագործություններով իրավամբ հպարտանում են ո՛չ միայն այն երկրների ժողովուրդները, որտեղ ստեղծվել են դրանք, այլև համագործակցության բոլոր ժողովուրդները, առաջադեմ ողջ մարդկությունը։ Սոցիալիզմի երկրներում զարգանում է սոցիալիստական ռեալիզմի՝ ինտերնացիոնալիստական ոգով միասնական արվեստը, որը անցյալի ազգային արվեստից վերցնում է ամենայն լավագույնը և դրա հետ մեկտեղ սնվում է ո՛չ միայն սեփական ավանդույթներով, այլև ուրիշ ազգերի սոցիալիստական ու դեմոկրատական գեղարվեստական ավանդույթներով, զինվում այն ամեն արժեքավորով, որ կա եղբայրական ժողովուրդների գեղարվեստական կուլտուրայում, համաշխարհային գեղարվեստական կուլտուրայում։ Ընդմին օրինաչափ է այն, որ եղբայրական սոցիալիստական երկրների արվեստի վարպետները դիմում են բազմազգ սովետական արվեստի զարգացման բազմահարուստ փորձին, որը հուսալի կողմնորոշիչ է սոցիալիզմի ու կոմունիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի իդեալների, միջազգային բանվոր դասակարգի շահերի համար մղվող պայքարում։

Այս տեսակետից ուշագրավ է ԳՍՄԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Է. Հոնեկերի՝ ԳՍՄԿ Կենտկոմի 1973 թ. մայիսյան պլենումում արտահայտած միտքը. «Մեր կուլտուրան սերտորեն կապված է Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների կուլտուրայի հետ։ Դա հարստացնում է մեր կուլտուրական կյանքը, ամրապնդում մեր ժողովուրդների բարեկամությունն ու միասնությունը և, միաժամանակ, բարերար ազդեցություն ունենում արվեստի վրա։ Կուլտուրական համագործակցությունը Սովետական Միության և սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ մեր կուլտուրական քաղաքականության հիմնական, անփոփոխ սկզբունքն է»։

Տարեցտարի ավելի են ընդլայնվում սովետական երկրի արտաքին կուլտուրական կապերը սոցիալիզմի մյուս երկրների հետ։ Այդ կապերն ունեն գեղարվեստական և հոգևոր ողջ ստեղծագործության փորձի փոխանակման ամենաբազմազան ձևեր— գիտնականների, գրողների և մշակույթի այլ վարպետների համատեղ կոնֆերանսներ, գեղարվեստական կոլեկտիվների փոխադարձ հյուրախաղեր, եղբայրական երկրների գրողների ստեղծագործությունների թարգմանություններ ու հրատարակում, եղբայրական երկրների գրականագետների ու արվեստի գործիչների տեսական ու մասնագիտական պատրաստում ՍՍՀՄ-ում։ Սրան հարկավոր է ավելացնել նաև այնպիսի ձևեր, ինչպիսիք են կուլտուրական խոշոր միջոցառումների՝ կուլտուրայի օրերի, երաժշտության, դրամատուրգիայի փառատոների փոխադարձ անցկացումը, սոցիալիզմի երկրների ստեղծագործական ինտելիգենցիայի համատեղ աշխատանքը արվեստի երկեր ստեղծելու նպատակով, ռադիո և հեռուստատեսային մշտական հաղորդումները եղբայրական երկրներից։

Բնականաբար, էական կուլտուրական կապերի ու շփումների քանակական ցուցանիշների և ձևերի բազմազանությունը չէ միայն, որոնք օգնում են ավելի խոր ու լրիվ ծանոթանալու եղբայրական ժողովուրդների հոգևոր ու գեղարվեստական արժեքներին։ Առավել կարևոր ու էական է, որ ծավալվող կապերը նպաստում են եղբայրական ժողովուրդների արվեստի մեջ կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների մարմնավորմանը, սոցիալիստական ռեալիզմի դիրքերի, հասարակական կյանքի երևույթների գնահատման նկատմամբ դասակարգային մոտեցման ամրապնդմանը։ Հենց այսպես են մերձենում սոցիալիզմի երկրների գեղարվեստական կուլտուրաները։



Այդ մերձեցմանը նպաստում է նաև այն, որ սոցիալիստական երկրների կուլտուրայի և արվեստի գործիչները դիմում են ամբողջ սոցիալիստական համագործակցության աշխատավորների համար հետաքրքիր պրոբլեմներին ու թեմաներին՝ բանվոր դասակարգի կյանքին ու սխրանքներին, աշխատանքի թեմային, հեղափոխական շարժման մեջ ֆաշիստական լծից Եվրոպայի ժողովուրդների ազատագրման, երկրների սոցիալիստական վերափոխման գործում ժողովրդական զանգվածների կատարած դերին, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ օրգանապես միացնելու, իմպերիալիզմի ու ռեակցիայի դեմ, հանուն խաղաղության ու սոցիալական առաջադիմության մղվող պայքարում գործողությունների միասնության խնդիրներին։

Արդեն այժմ իրականացվում են մի շարք գործնական միջոցառումներ, որոնք նպաստում են սոցիալիստական գեղարվեստական կուլտուրաների հետագա մերձեցմանը։ Այսպես, 1973 թ. ամռանը Սոֆիայում սոցիալիստական տասը երկրներ կազմակերպեցին ռեալիստական գեղանկարչության միջազգային ցուցահանդես, որն արտացոլում էր արվեստի ակտիվ դերը սոցիալիզմի կառուցման գործում։ Սովետական Միության և եղբայրական երկրների կինեմատոգրաֆիստների համատեղ ջանքերով ստեղծվել են բավական լավ ֆիլմեր, որոնք նվիրված են ընդհանուր թշնամու՝ հիտլերյան ֆաշիզմի դեմ ժողովուրդների մղած պայքարի դարաշրջանին։ «Ազատագրում», «Ալբա Ռեգիա» և մի շարք այլ ֆիլմերի համատեղ արտադրությունը դրական արդյունք է տվել. այդ ժապավենները լավ ընդունելություն գտան հանդիսատեսների կողմից։

Կարգավորվում են եղբայրական սոցիալիստական երկրների կուլտուրայի ու դրանց փոխադարձ կապերի համատեղ գիտական հետազոտությունները։ Այսպես, օրինակ, լույս է տեսել ՍՍՀՄ-ի և ԳԴՀ-ի գիտնականների Սովետական և գերմանական գրականություն (Բեռլին, 1972) կոլեկտիվ ստվարածավալ աշխատությունը, որն արտացոլում է սովետական և գերմանական գրականությունների փոխներգործության արդյունքները անցյալում ու ներկայում։ ՍՍՀՄ ԳԱ Ա. Մ. Գորկու անվան համաշխարհային գրականության ինստիտուտը եղբայրական երկրների գիտությունների ակադեմիաների համանման ինստիտուտների հետ մեկտեղ պատրաստում է Ընդհանուր և առանձնահատուկը Եվրոպայի սոցիալիստական երկրների գրականություններում մեծ ուսումնասիրությունը, որտեղ բացահայտվելու են ինչպես գեղարվեստական կուլտուրաների զարգացման ընդհանուր օրինաչափությունները սոցիալիզմի պայմաններում, նույնպես և նրանց զարգացման առանձնահատկությունը յուրաքանչյուր երկրում։

Սոցիալիստական ազգերի հոգևոր կուլտուրայի փոխհարստացումն ընթանում է իրականության էսթետիկական յուրացման, ժամանակակցի՝ աշխատանքի մարդու, մարտիկի, աշխատավորի, սոցիալիստական հասարակարգ կերտողի լիարյուն կերպարի ստեղծման նոր հնարավորությունների որոնմամբ։ Այդ պրոցեսը նպաստում է ինտերնացիոնալ հիմքի վրա, յուրաքանչյուր ազգային կուլտուրայի և ամբողջ համաշխարհային սոցիալիստական կուլտուրայի զարգացմանը, քանի որ կուլտուրայի բնագավառում չկան փոքր և մեծ ժողովուրդներ. ամեն մի ժողովուրդ, ինչ թվաքանակ էլ ունենա, ընդունակ է իր գործունեությամբ ավանդ ներդնել ընդհանուր գանձարանում։

Սոցիալիստական ազգերի համագործակցության հետագա զարգացումը և նրանց կուլտուրաների, հոգևոր կյանքի մերձեցումը պահանջում են տեսական խոր ընդհանրացում։ Արդի էտապում նպատակահարմար կլիներ, մեր կարծիքով, ելնելով սոցիալիզմի երկրների կուլտուրաների մերձեցման գործում ձեռք բերված իրական արդյունքներից, անդրադառնալ դրանց փոխհարստացման ու փոխներգործության պրոցեսները համակողմանի զարգացնելու հարցին։ Այս ամենը կնպաստի սոցիալիզմի երկրների ընդհանուր «հոգևոր արտադրանքի» ձևավորմանը, որի ընթացքում նրանց աճող ինտերնացիոնալ միասնությունը հիմք կծառայի համամարդկային կոմունիստական կուլտուրայի համար։

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԿՅԱՆՔԻՆ

**Ա. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր

Հանրապետության գիտությունների ակադեմիայի բիոքիմիայի ինստիտուտը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ 1968 թ. «Գիտական հաստատությունների գործունեության արդյունավետության բարձրացման» և «Ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրումն արագացնելու միջոցառումների մասին» որոշումներով, զգալի աշխատանք է կատարել ինստիտուտում գիտական գործունեության կազմակերպման ու արդյունավետության բարձրացման, դրա արդյունքների և հանձնարարականների կիրառման, վարչական գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողության իրականացման մարզում։

Մեր ինստիտուտն իր համեմատաբար կարճ գոյամիջոցում, հանրապետության ԳԱ ակադեմիկոս Հրաչյա Բունյաթյանի ղեկավարությամբ, դարձել է Սովետական Միության խոշորագույն գիտական կենտրոններից մեկը՝ ներվային բիոքիմիայի մարզում։ Ունենք ավելի քան 80 գիտաշխատողներ, այդ թվում՝ գիտությունների 50 թեկնածու և 9 դոկտոր։ Գիտական աշխատանքներ են տարվում 10 լաբորատորիաներում։

Տեսական ու գործնական բավական լուրջ հետազոտություններ են կատարվում ինստիտուտի ուղեղի բիոքիմիայի լաբորատորիայում, ուր բացահայտվել է գամմաամինոկարագաթթվի դերը ուղեղի հյուսվածքում ընթացող մի շարք փոխանակային ռեակցիաներում։

Մինչև անցյալ դարի վերջերը ենթաստամոքսային գեղձը դիտվում էր միայն որպես մարսողական օրգան։ Սակայն, բոլորովին անսպասելի, Մերինգը և Մինկովսկին 1889 թ. հայտնաբերեցին, որ այն անմիջականորեն մասնակցում է օրգանիզմում ածխաջրատային փոխանակությանը։ Շների ենթաստամոքսային գեղձի հեռացման հետևանքով արյան մեջ գլյուկոզայի քանակությունն զգալիորեն ավելանում էր, առաջացնելով, այսպես կոչված, հիպերգլիկեմիա։ Հետագա գիտարկումներից պարզվեց, որ ենթաստամոքսային գեղձի հեռացումը կենդանիների մոտ հարուցում է այնպիսի երևույթներ, որոնք բնորոշ են շաքարախտով հիվանդ մարդկանց։ Ուրեմն, ենթաստամոքսային գեղձը մասնակցում է ո՛չ միայն մարսողությանը, այլև հյուսվածքներում ածխաջրատային փոխանակությանը։ Այնուհետև ենթաստամոքսային գեղձից ստացվեց ինսուլին, որն արյան մեջ ներարկվելով՝ իջեցնում է գլյուկոզայի պարունակությունը։ Ինստիտուտում կատարված ուսումնասիրությունները ցույց տվին, որ գամմաամինոկարագաթթուն արագացնում է լյարդում գլիկոգենի քայքայումը, դրանով իսկ ավելանում է գլյուկոզայի քանակությունը, առաջանում է հիպերգլիկեմիա։ Մյուս կողմից՝ նրա որոշակի քանակությունը նկատելիորեն խթանում է գլյուկոզայի կլանումը ուղեղի, մկանային, կրճկային և ճարպային հյուսվածքներում, հանդես բերելով ինսուլինանման ազդեցություն։

Նշված ամինոթթուն խթանող ներգործություն ունի նաև նեյրոսեկրեցիայի



վրա, որը վկայում է գամմաամինոկարագաթթվի գործուն մասնակցությունը ներվային ակտիվության պահպանմանը։

Վերջին տարիներին մեր ինստիտուտում կատարված հետազոտությունները հավաստում են, որ շաքարախտի ժամանակ ուղեղում և լյարդում մի շարք ֆերմենտների ակտիվությունը ևս ենթարկվում է էական փոփոխությունների։

Ուղեղի բիոքիմիայի լաբորատորիայում բիոէներգետիկայի խմբի աշխատակիցները հետաքրքրական ուսումնասիրություններ են կատարում գյուղատնտեսական թռչունների սաղմնային և հետսաղմնային զարգացման ընթացքում բջիջներում էներգիայի առաջացման և դրա օգտագործման կանոնավորման վերաբերյալ։ Հավի սաղմի հյուսվածքներում էներգետիկական փոխանակության առանձնահատկությունների վերաբերյալ հասակային փոփոխությունների հետազոտությունը, ինչպես և դրանց հնարավոր կարգավորումը, անկասկած, կարևոր նշանակություն կունենան ինկուբատորային տնտեսություններում ճտերի աճն ապահովելու գործում։

Ինստիտուտի հորմոնների լաբորատորիայում (ղեկավար՝ ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Ա. Գալոյան), ուր երկար տարիներ զբաղվում էին հիպոթալամահիպոֆիզար համակարգության բիոքիմիայի ուսումնասիրությամբ, ստացել են ֆիզիոլոգիապես ակտիվ մի շարք միացություններ։ Դրանք են՝ հորմոնային բնույթի երկու նյութեր, որոնց չնչին քանակությունը (կիլոգրամին՝ 1 միկրոգրամ) խիստ (200—300 տոկոսով) և երկարատև լայնացնում է սրտի պսակաձև անոթները։ Այդ նյութերը ցածր մոլեկուլյար պեպտիդներ են՝ կապված որոշակի սպիտակուցների հետ։ Կենդանիների հիպոթալամուսից անջատվել են հատուկ նյութեր, այսպես կոչված՝ սպիտակուցակիրներ, որոնց հետ միացած են անոթալայնիչ պեպտիդները։ Նշված նյութերի արտազատումն արյան մեջ և դրանց հայտնաբերումը ալբումինների, գլոբուլինների և արյան պլազմայի կազմում՝ վկայում են, որ սպիտակուցակիրները հորմոններ են։

1972 թ. ՍՍՀՄ առողջապահության մինիստրության ֆարմակոլոգիական կոմիտեն թույլատրեց կլինիկական փորձարկման ենթարկել այդ նյութերը։ Երևանի սրտաբանության ինստիտուտում 100 հիվանդների վրա կատարված փորձերը ցույց տվին տվյալ նյութերի բարերար ազդեցությունը սրտամկանի ինֆարկտով հիվանդների ապաքինման վրա։ Փորձեր են կատարվել նաև ՍՍՀՄ առողջապահության մինիստրության սրտի վիրաբուժության ինստիտուտում և ստացվել են դրական արդյունքներ։ ՍՍՀՄ Մինիստրների սովետին կից գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն իր որոշումներում նշել է նման հետազոտությունների կարևորությունը։ Այժմ ուսումնասիրությունները տարվում են հիպոթալամուսից անջատված նոր նյութերի կառուցվածքի պարզաբանման, դրանց կիրառման ոլորտում։ Արդյունքը գոհացուցիչ է. լաբորատորիայի աշխատակիցների անունով ստացվել են հեղինակային հինգ վկայագրեր, իսկ աշխատանքների որոշ փուլեր պատենտավորվել են մի շարք երկրներում (Շվեյցարիա, ԱՄՆ, ԳՖՀ և այլն)։

Ինստիտուտի նուկլեոտիդների և ամինոթթուների բիոքիմիայի լաբորատորիայում (վարիչ՝ պրոֆ. Ս. Մովսիսյան) վերջին տարիներին կատարված հետազոտությունները հանգեցրին կենդանական հյուսվածքներում նուկլեոտիդային բնույթի մի նոր կոֆերմենտի՝ դեամինո-ՆԱԴ-ի հայտնաբերմանը և նյութափոխանակության մեջ դրա դերի լուսաբանմանը։ Այդ ուղղությամբ կատարված աշխատանքները վկայում են, որ դեամինո-ՆԱԴ-ը անմիջականորեն մասնակցում է ազոտային և էներգետիկական փոխանակությանը։ Մասնավորապես ապացուցվել է, որ այդ նյութը կարևոր դեր է խաղում ամինոթթուների քայքայման և դրանցից ազատ ամոնիակի գոյացման պրոցեսում։ Ուսումնասիրվել են այն մեխանիզմները, որոնցով իրագործվում է ամինոթթուներից ամոնիակի անջատումը՝ դեամինո-ՆԱԴ-ի մասնակցությամբ։

Առաջ է քաշվել մի նոր տեսակետ ամինոթթուներից ամոնիակի գոյացման մեխանիզմի վերաբերյալ, որն արդեն ճանաչում է գտել գրականության մեջ և համարվում է ամինոթթուների քայքայման կարևոր ուղիներից մեկը։ Այդ աշխատանքներում միաժամանակ ցույց է տրվել, որ դեամինո-ՆԱԴ-ը մեծապես

խթանում է նաև էներգիայի առաջացման պրոցեսը։ Նկատի ունենալով դեամինո-ՆԱԴ-ի գործարար մասնակցությունը օքսիդա-վերականգնման ռեակցիաներում և էներգիայի գոյացման պրոցեսում, ինչպես նաև թաղանթային պատնեշը համեմատաբար արագ հաղթահարելու նրա ունակությունը, համապատասխան ուսումնասիրություններ սկսվեցին ամբողջական օրգանիզմների վրա այդ միացության ֆիզիոլոգիական և ֆարմակոլոգիական ազդեցությունը պարզաբանելու նպատակով, բժշկական պրակտիկայում այն կիրառելու համար։ Ուսումնասիրությունները բացահայտեցին, որ դեամինո-ՆԱԴ-ը սուր ալկոհոլային թունավորումների կանխման արդյունավետ միջոց է։ Բավական կարճ ժամանակամիջոցում (մոտ 15 րոպե) այդ նյութի ներարկումը կենդանուն դուրս է բերում վերահաս մահվան վտանգից և կարգավորում խանգարված ֆունկցիաների գործունեությունը։

Հետազոտությունները ցույց տվին, որ դեամինո-ՆԱԴ-ը օժտված է նաև սրտամկանի սնուցումը բարելավելու կարևոր հատկությամբ։ Ստացված արդյունքները հնարավորություն են ընձեռում հույս հայտնելու, որ մոտ ապագայում դեամինո-ՆԱԴ-ը կկիրառվի բժշկական պրակտիկայում։

Ժամանակակից բժշկական պրակտիկայում տարբեր հիվանդությունների բուժման ժամանակ լայնորեն կիրառվում են մի շարք կոֆերմենտներ, որոնցից է նաև նիկոտինամիդադենինդինուկլեոտիդը (ՆԱԴ)։ Պետք է ընդգծել, որ այդ կոֆերմենտը հյուսվածքներում համապատասխան ֆերմենտների մասնակցությամբ արագ քայքայվում է և կորցնում իր ներգործությունը։ Մինչդեռ դեամինո-ՆԱԴ-ը նույն պայմաններում տարբեր ազդակների նկատմամբ բավականին կայուն է և երկարատև պահպանում է իր ազդեցությունը։

Վերջին տարիներս լիպիդների բիոքիմիայի լաբորատորիայի աշխատակիցները, պրոֆ. Կ. Ղարագյոզյանի ղեկավարությամբ, ֆիբրինոգենի պատրաստուկներում հայտնաբերել են մի շարք ֆոսֆոլիպիդներ, որոնք բջջի ներսում կազմում են սպիտակուցա-լիպիդային կոմպլեքսներ։ Այլ լիպիդների հետ դրանք առաջացնում են բջջի արտաքին շերտը և լիպիդային թաղանթը։ Պարզվել է, որ երբ ֆիբրինոգենը փոխարկվում է ֆիբրինի, վերջինիս կազմում որոշակիորեն փոփոխվում է թթու և չեզոք ֆոսֆոլիպիդների հարաբերակցությունը։ Չեզոք ֆոսֆոլիպիդները նկատելիորեն խթանում են արյան մակարդումը, իսկ թթուները, հակառակը՝ դանդաղեցնում են այդ պրոցեսը։ Երևանի բժշկական ինստիտուտի հոսպիտալ-վիրաբուժության կլինիկայի հետ կատարված հետազոտություններն ապացուցեցին, որ անոթների աթերոսկլերոզով տառապող հիվանդների մոտ անոթներից արտահոսող արյան մեջ բարձր է չեզոք ֆոսֆոլիպիդների պարունակությունը, ինչպես և մակարդելիությունը։ Առանձին ֆոսֆոլիպիդներ կարևոր նշանակություն ունեն աթերոսկլերոզի դեպքում արյան մակարդման կարգավորման ու տրոմբների առաջացումը կանխելու գործում։ Այս լաբորատորիայում (ՀՍՍՀ առողջապահության մինիստրության ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտի հետ համատեղ) գլխուղեղում ֆոսֆոլիպիդների քանակական տեղաշարժերն ուսումնասիրվել են ճառագայթային հիվանդության դեպքում և դիտվել են մի շարք հետաքրքրական օրինաչափություններ։

Ներկայումս մեծ նշանակություն է տրվում ալկոհոլիզմի հետ կապված ախտաբանության, հատկապես գլխուղեղում դեմիելինացման պրոցեսի առանձին հարցերին։ Ինչպես պարզվեց այս լաբորատորիայում կատարված հետազոտությունների արդյունքներից, ալկոհոլային թունավորման հետևանքով խիստ փոփոխություններ են նկատվում ինչպես գլխուղեղի ու լյարդի ֆոսֆոլիպիդային կազմում, նույնպես և նրանց առաջացումը կատալիզող մի քանի ֆերմենտների ակտիվության մեջ։ Նախատեսվում է հետագա հետազոտությունները նվիրել այնպիսի հարցերի պարզաբանմանը, որոնք հնարավորություն կտան կարգավորելու ֆոսֆոլիպիդային փոխանակությունը նշված հյուսվածքներում։

Պատոքիմիայի լաբորատորիայում (վարիչ՝ պրոֆ. Ա. Հովհաննիսյան) հետազոտություններ են տարվում որոշ հիվանդությունների ժամանակ երիկա-



մային հյուսվածքում բիոքիմիական պրոցեսների խանգարումների վերաբերյալ։ Մասնավորապես ցույց է տրվել, որ նեֆրիտով և միզաքարերով տառապող հիվանդների երիկամներում ամոնիակի առաջացման ֆունկցիան զգալիորեն ճնշվում է, որը սերտորեն կապված է այդ հյուսվածքի տարբեր շերտերում ամինոթթուներից ամոնիակի առաջացման (կամ ինչպես ընդունված է ասել՝ դեզամինացման) պրոցեսի հետ։ Այս լաբորատորիայում բացահայտվել է, որ արյան շիճուկում պարունակվում է մի նյութ, որը երիկամների կեղևային շերտում ճնշում է ամինոթթուների դեզամինացումը, դրանով իսկ հյուսվածքում նյութափոխանակության ընթացքում կատարելով կարգավորիչ ֆունկցիա։ Հուսանք, որ այս հետազոտությունները կարևոր գործնական նշանակություն կունենան երիկամների որոշ հիվանդությունների բուժման համար։

Տարեցտարի ընդլայնվում են ինստիտուտի գիտական կապերը արտասահմանյան մի շարք երկրների բիոքիմիական առաջավոր լաբորատորիաների հետ։ Այսպես, օրինակ, 1970 թ. սկսած, ֆերմենտների լաբորատորիան սերտ կապերի մեջ է Հունգարիայի գիտությունների ակադեմիայի բիոքիմիայի ինստիտուտի և Դեբրեցենի համալսարանի բժշկական քիմիայի բաժնի հետ։ Այդ աշխատանքների շնորհիվ մեկուսացվել է օրգանիզմի տարբեր հյուսվածքներում էներգիայի առաջացման պրոցեսին մասնակցող ֆոսֆոպրոտեինֆոսֆատազա ֆերմենտը և ուսումնասիրվել դրա քիմիական հատկությունները։ Բացահայտվել է տվյալ ֆերմենտի դերն օրգանիզմում, այլ ֆերմենտների գործունեության կանոնավորման մեջ։ Հետազոտությունների արդյունքները հույս են ներշնչում, որ կատարված աշխատանքները կարող են նշանակություն ունենալ օրգանիզմում որոշ հիվանդությունների նախնական ախտորոշման համար։

ԱՄՆ-ում, երկարատև գործուղման ընթացքում, պրոֆ. Ա. Գալոյանն այցելել է երկրի մի շարք գիտահետազոտական կենտրոններ, այդ թվում Նյու-Յորքի նեյրոքիմիայի պետական ինստիտուտ, ռոկֆելերյան գիտական կենտրոն, Կոլումբիայի համալսարան և այլն։ Նյու-Յորքում, նեյրոքիմիայի ինստիտուտում, նա համատեղ աշխատանքներ է կատարել պրոտեոլիտիկ ֆերմենտների ազդեցության վերաբերյալ։ Ուղեղի բիոքիմիայի լաբորատորիայի բիոէներգետիկների խումբը համատեղ հետազոտություններ է կատարում Լայպցիգի Կ. Մարքսի անվան համալսարանի նեյրոքիմիայի լաբորատորիայի հետ։

Պրոֆ. Ս. Մովսիսյանը վերջերս վերադարձավ ԱՄՆ-ից։ Նա Նյու-Յորքի Կոռնելի համալսարանի բժշկական կոլեջի բիոքիմիայի ամբիոնում համատեղ հետազոտություններ էր կատարում կարևոր պրոբլեմների շուրջ։ Այդ ուսումնասիրությունները ցույց են տվել, որ դեամինո-ՆԱԴ-ը իրեն մոտիկ միացությունների շարքում ամենաակտիվն է և գործարար մասնակցություն է ցուցաբերում ամինոթթուների սինթեզի և քայքայման պրոցեսներում։

Արտասահմանյան բազմաթիվ գիտնականներ այցելում են նաև մեր ինստիտուտ։ Ինստիտուտի աշխատակիցներն ամեն տարի զեկուցումներով հանդես են գալիս ինչպես միութենական, նույնպես և միջազգային տարբեր գիտաժողովներում։

Վերջին տարիներս ինստիտուտում լուրջ քայլեր են արվել գիտական աշխատանքի արդյունավետության բարձրացման, հետազոտություններից ստացված արդյունքների օգտագործման ասպարեզում։ Պետք է նշել, որ այս գործում դեռևս մեծ դժվարություններ կան։ Մեր կարծիքով, ճիշտ կլիներ գիտական հետազոտություններից ստացված գործնական արդյունքների կիրառման համար հանրապետությունում ստեղծել որևէ կազմակերպություն, որն ստանձներ գիտական հայտնագործություններին կյանքի ուղեգիր տալու, դրանց իրականացման ճանապարհ հարթելու կարևոր գործը։

Ինչպես այլ գիտությունների, բիոքիմիական հետազոտությունների զարգացման համար ևս առաջնային է որակյալ կադրերի պատրաստման հարցը։ Ամեն տարի մեր ինստիտուտը համալրվում է երիտասարդներով, որոնք հիմնականում բժշկական, անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտների կամ համալսարանի սաներ են։ Հայտնի է նաև, որ նշված բուհերը պատրաստում

են ու լիարժեք բիոքիմիկոսներ. նրանց մասնագիտացումը փաստորեն շարունակվում է ինստիտուտում։ Լավ մասնագետ դառնալը պայմանավորված է նրանով, թե տվյալ լաբորատորիայում ինչպիսի՛ հոգատարությամբ կշրջապատեն նորավարտին, ի՛նչ ծանրաբեռնվածությամբ կամ լարվածությամբ կաշխատի նա։ Լրջորեն քննարկելով այդ հարցը՝ կուսբյուրոն նպատակահարմար գտավ հնարավորություն ստեղծել, որ նոր աշխատակիցներն առաջին տարում, հիմնականում լինելով մեկ լաբորատորիայում և զբաղվելով տվյալ թեմայով, պարբերաբար մասնակցեն նաև այլ լաբորատորիաների աշխատանքներին, ծանոթանան նրանց պրոբլեմներին և յուրացնեն բիոքիմիական մեթոդները։

Սակայն, նկատի ունենալով, որ հանրապետությունում մեծ է երիտասարդ բիոքիմիկոսների պահանջը, կուսբյուրոն դիմել է ՀՍՍՀ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրություն՝ Երևանի պետական համալսարանում բիոքիմիայի բաժին բացելու առաջարկով։ Հուսանք, որ պատշաճ ուշադրություն կնվիրվի այդ հարցին։

Խոսելով գիտական կադրերի ընտրության մասին, հարկ է նշել, որ ասպիրանտների ընդունելության ժամանակ համապատասխան ընտրություն կատարելիս ելնում են հանձնված քննություններից ստացված գնահատականից։ Սակայն այդպես չեն վարվում լաբորանտներ, կրտսեր գիտաշխատողներ ընդունելիս, իսկ մեր ինստիտուտում նոր լաբորանտների ընդունելությունը կատարվում է միայն նախնական համակողմանի զրույցից հետո. լաբորանտին կրտսեր գիտական աշխատակից դարձնելիս ևս պահանջվում է քննություն մասնագիտությունից և որևէ օտար լեզվից. նկատի են առնվում նաև աշխատակցի գիտական աշխատանք կատարելու հմտությունն ու ունակությունը։

Ինչպես գիտական այլ հաստատությունների, մեր ինստիտուտի աշխատանքների արդյունավետությունը ևս պայմանավորված է նրա լաբորատորիաների տեխնիկական հագեցվածությամբ։ Մինչդեռ մեր լաբորատորիաները դեռևս չունեն անհրաժեշտ սարքավորումներ, որն զգալիորեն դժվարացնում է թեմատիկ պլանների կատարումը։ Մոլեկուլյար կենսաբանության բնագավառում տարվող ուսումնասիրությունները սերտորեն կապված են նաև անհրաժեշտ քիմիական նյութերի ձեռքբերման հետ։ Լաբորատորիաներում ամենօրյա գործածվող բազմաթիվ թանկարժեք քիմիական նյութեր ստանում ենք արտասահմանից։ Անուշադրության է մատնված այդ նյութերի արտադրության կազմակերպումը։

Մեր երկրի մի շարք բիոքիմիական առաջավոր լաբորատորիաներում հաճախ հետազոտությունները տարվում են միկրոմեթոդներով, նպաստելով թանկարժեք քիմիական նյութերի խնայողությանը։ Այժմ մեզ մոտ ևս պայմաններ են ստեղծվում որոշ ուսումնասիրություններ միկրոմեթոդներով կատարելու համար։

Մեր աշխատանքների անխափան կազմակերպման նպատակով կարևոր է նորմալ փորձակենդանիների ձեռքբերումը։ Ինստիտուտի կուսբյուրոն և դիրեկցիան հետևողականորեն զբաղվում են կենդանանոցի աշխատանքների բարելավմամբ։ Սակայն երբեմն, լիարժեք կերի բացակայության պատճառով, կենդանիները նորմալ չեն զարգանում, որի հետևանքով փոխվում է հետազոտվող այս կամ այն բիոքիմիական պրոցեսի պատկերը։ Այժմ հանրապետության գիտական հաստատություններում փորձակենդանիների մեծ պահանջարկ կա. այն լրացվում է Մոսկվայից, Լենինգրադից, Կիրովաբադից և այլ քաղաքներից ներմուծվող կենդանիներով. այդ կապված է պետական խոշոր գումարների հետ։ Արդեն մի քանի տարի է, ինչ բարձրացվել է հանրապետությունում փորձակենդանիների սեփական բազա ստեղծելու հարցը, բայց, չգիտես ինչու, այն ոչ մի արձագանք չի գտնում համապատասխան կազմակերպություններում։



ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ մոլեկուլյար կենսաբանության և մոլեկուլյար գենետիկայի զարգացման միջոցառումների մասին որոշման մեջ նշված է, որ անհրաժեշտ է ընդլայնել ինստիտուտների գիտաարտադրական բազան։ Ժամանակն է մեր ինստիտուտին կից ևս ստեղծելու նման կիսաարտադրական բնույթի ընդլայնված բազա։

Ժամանակակից մոլեկուլյար կենսաբանության բնագավառում առանձին փաստերից աստիճանաբար արվում են խոշոր ընդհանրացումներ։ Սակայն նման ընդհանրացումների համար մի նեղ ճյուղի ջանքերն անբավարար են՝ ապահովելու որևէ պրոբլեմի լուծման հաջողությունը։ Այսպես՝ կենսաբաններին պետք է միանան քիմիկոսները, ֆիզիկոսները, մաթեմատիկոսները և հարակից այլ մասնագիտությունների ներկայացուցիչներ։ Սակայն գիտահետազոտական մեկ ինստիտուտի սահմաններում անհնար է խտացնել այդ բոլոր ուղղությունները։ Ժամանակն է, որ հարակից գիտական հաստատությունները միավորվեն մեկ ընդհանուր կենտրոնում, որը կունենա իր ընդհանուր պրոբլեմը և դրա համընդհանուր լուծման նպատակով մշակված ձևերն ու մեթոդները։ Այսպես, օրինակ, տասնամյակների ընթացքում մեր հանրապետությունում ստեղծվել է նեյրոքիմիկոսների մի փայլուն դպրոց, որի աշխատանքների արդյունքները հայտնի են ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս։ Արդյոք ժամանակը չէ՞, որ Երևանում ստեղծվի նեյրոլոգիական մի կենտրոն, որն իր շուրջը կհամախմբի հարակից բոլոր ինստիտուտներն ու լաբորատորիաները. դրանով իսկ նախադրյալներ կստեղծվեն ավելի խոշոր պրոբլեմների լուծման համար։ Այդպիսի կենտրոնին կից կհիմնվի նաև արտադրական խոշոր բազա, որը կարևոր դեր կխաղա կատարված հայտնագործությունների գործադրման մարզում։ Այդպիսի կենտրոնի ստեղծումը հնարավորություն կընձեռի համախմբելու բոլոր մասնագետների ուժերը, ավելի արդյունավետ օգտագործելու գիտական սարքավորումներն ու նյութերը, կբարձրացնի գիտության կառավարման մակարդակը և կտա ցանկալի արդյունքներ։

ՀՍՍՀ ԳԱ բիոքիմիայի ինստիտուտի համար կենսական նշանակություն ունեցող այս կարիքների բավարարման խնդիրները խիստ մտահոգում են մեր կուսկազմակերպությանը։

# ՄԵՐ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՐՏՔԸ

**Մ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության
Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար

*Ավելի քան երեքուկես տարի մեր երկրում հաջողությամբ կենսագործվում է ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տնտեսական ու կուլտուրական շինարարության հոյակապ ծրագիրը: Յուրաքանչյուր սովետական մարդ տեսնում ու համոզվում է, որ այն ամենը, ինչ ստեղծվում է, ողջ ժողովրդի համար է: Նա միաժամանակ քաջ գիտակցում է, որ համագումարի նախանշած՝ երկրի ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրների լուծումն անհնարին է առանց աշխատանքային ու պետական բարձր կարգապահության՝ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:*

*Սոցիալիստական գիտակցական կարգապահությունը հանրային հարստության բազմապատկման, սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի աճի գրավականն է: Ահա թե ինչու կուսակցությունը, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին օրից սկսած, առանձնակի կարևորություն է տալիս սոցիալիստական սեփականության հանդեպ աշխատավորության կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակմանը, սովորեցնում խնայողաբար ծախսել պետական միջոցներն ու նյութերը: ՀԿԿ Երևանի Օրջոնիկիձեի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, վարչական մարմինները, կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները, կուսակցության XXIV համագումարի որոշումները, ուժեղացրել են պայքարը սոցիալիստական սեփականությունը պահպանելու, հափշտակությունները կանխելու համար:*

*Մեր ծավալած գաղափարական-քաղաքական գործունեությունն ուղղված է արտադրության մարդկանց մեջ աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակմանը, նրանց ստեղծագործական ակտիվության զարգացմանը, գիտակցական կարգապահության ամրապնդմանը, իններորդ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա խնդիրների անթերի լուծմանը:*

*Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ժամանակին անդրադարձել են կուսակցության որոշումներին, մշակել համապատասխան միջոցառումներ, հետևել դրանց կատարմանը: Շրջկոմի բյուրոյի նիստերում, կուսժողովներում պարբերաբար քննարկվել են հանրային ունեցվածքի պահպանության համար և վատնում-չարաշահումների դեմ պայքարն ուժեղացնելու հարցերը: Ընդունված որոշումների կենսագործման շնորհիվ բարելավվել է այդ գործը: 1974 թ. փետրվարի 14-ին բյուրոն անդրադարձավ Երևանի երկաթուղային կայարանում սոցիալիստական սեփականության պահպանության վիճակին և բացահայտեց լուրջ թերություններ: Նշվեց, որ ղեկավարությունն ու կուսկազմակերպությունը թույլ հսկողություն են սահմանում հանրային ունեցվածքի պահպանության և բեռները ժամանակին հասցեատերերին հանձնելու նկատմամբ: 1973 թ. կայարանի փակուղում տեղի են ունեցել գողության դեպքեր, անտոմս ուղևորներ փոխադրելու համար հարուցվել են քրեական մի շարք գործեր, 42 ուղեկցողներ իջեցվել են ցածր աշխատանքի: Բյուրոն խիստ կերպով կշտամբեց կայարանի դիրեկցիային ու կուսկազմակերպությանը և պահանջեց վերացնել բացահայտված թերությունները, կանխել կորուստներն ու անարտադրողական ծախքերը:*

*Կուսկազմակերպությունների ակտիվ գործունեության շնորհիվ շրջանի շատ ձեռնարկություններում անհամեմատ նվազել են հափշտակությունները, վատնում-չարաշահումները, ուժեղացել է պայքարը աշխատաժամանակի, հումքի, վառելանյութի, էլեկտրաէներգիայի տնտեսման համար, բարելավվել հիմնական ֆոնդերի պահպանման, հաշվառման և վերահսկողության գործը:*

*Շատ կուսկազմակերպություններ և ժողովրդական վերահսկողության խմբեր սկսել են մոտիկից ու գործնականորեն զբաղվել սոցիալիստական սեփականության պահպանման հարցերով: Պահածոների, «Հաստոցանորմալ», «Հիդրոհաղորդակ» գործարանների, ալրաղաց կոմբինատի, Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի և այլ հիմնարկ-ձեռնարկությունների կուսկազմակերպություններ ու ժողովրդական վերահսկողության խմբեր սիստեմատիկաբար ստուգում են նյութական արժեքների պահպանման, հաշվառման ու հաշվետվության վիճակը, հումքն ու նյութերը խնայողաբար օգտագործելու, վատնում-շռայլումները կանխելու համար տարվող աշխատանքի վիճակը: Օրինակ՝ պահածոների գործարանի ժողովրդական վերահսկողության խումբը լայն պայքար է ծավալել պետական ունեցվածքը շռայլողների և հափշտակողների դեմ: Նախընթաց տարիներին նա բացահայտել է 5.700 ռուբլու պետական ունեցվածքի յուրացումներ, հայտնաբերել մանր գողության փաստեր: Խմբի առաջարկությամբ չորս մարդ ազատվել է աշխատանքից, ինը՝ ենթարկվել վարչական տույժի: Խմբի անդամները (նախագահ՝ Ս. Վարդապետյան) շաբաթը երկու-երեք անգամ պարբերաբար ստուգում են գործարանի արտադրամասերը: Նրանց նախաձեռնությամբ հայտնաբերված մանր գողությունների համար 1972—1973 թթ. 30 աշխատողների հարց ներկայացվել է ընկերական դատարանի քննարկմանը, իսկ առավել լուրջ խախտումներ կատարածները հեռացվել են գործից: Ստուգումների մեծ մասը քննարկվել է գործարանի կուսբյուրոյի նիստերում, ձեռնարկվել են համապատասխան միջոցներ՝ նկատված ապօրինությունները վերացնելու համար:*

*Ուշագրավ գործունեություն է ծավալում Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկայի ժողովրդական վերահսկողության խումբը (նախագահ՝ Ե. Առաքելյան): Նա սիստեմատիկաբար զբաղվում է պետական ունեցվածքի պահպանման, հումքի և նյութերի խնայողաբար օգտագործման հարցերով: Խմբի հետևողականության շնորհիվ խնայվել է 18,3 հազար ռուբլու արժողությամբ մանվածք: Կուսշրջկոմը, վարչական օրգանների հետ միասին, պարբերաբար հրավիրում է խորհրդակցություններ՝ նվիրված հանրային ունեցվածքի պահպանության խնդիրներին: Այստեղ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները հաշիվ են տալիս քննարկվող հարցի կապակցությամբ իրենց ծավալած գործունեության, մշակած միջոցառումների և դրանց արդյունքների մասին: Եվ քանի դեռ մեզ մոտ կան մարդիկ, որոնք ձեռք են մեկնում հասարակական ունեցվածքին, փորձում են ապրել անաշխատ եկամուտներով, այսպիսի խորհրդակցությունները դառնում են խիստ անհրաժեշտություն, զգաստացնում հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին, կուսկազմակերպությունների քարտուղարներին, ստիպում նրանց լինել աչալուրջ, ուժեղացնել պայքարը սոցիալիստական հասարակարգին խորթ բարքերի դեմ:*

*Կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների, վարչական մարմինների և հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների առաջնահերթ խնդիրն է ամեն օր և ամեն ժամ, տևականորեն զբաղվել աշխատողների դաստիարակության հարցերով: Այդ գործում անգնահատելի դեր է խաղում դաս-*

խոսական պրոպագանդան, եթե այն կազմակերպվում է արդյունավետ և նպատակասլաց։ Շրջկոմի դասախոսական խմբի անդամները, դատաքննչական մարմինների պատասխանատու աշխատողները հաճախ են լինում աշխատավորական կոլեկտիվներում, կարդում սոցիալիստական սեփականության պահպանությանն առնչվող դասախոսություններ, անցկացնում զրույցներ՝ բանվոր-ծառայողների ուշադրությունը հրավիրելով այդ խնդիրների վրա։

Սոցիալիստական սեփականության պահպանման, վատնում-չարաշահումների դեմ մղվող պայքարի ուժեղացման, կոլեկտիվի անդամների քաղաքական դաստիարակության բարելավման համար կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, վարչական մարմինների և ժողովրդական վերահսկողության խմբերի ծավալած գործունեությունը նպաստել է ձեռնարկություններում կուսակցական-պետական կարգապահության ամրապնդմանը, պլանային առաջադրանքների ու ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները հնգամյակի երեքուկես տարում տվել են 39 մլն ռուբլուց ավելի արտապլանային արտադրանք, իրացման պլանը գերակատարել 31,5 մլն ռուբլով։

Սակայն մեր արածը դեռևս գոհացուցիչ չէ։ Երբ խորամուխ ենք լինում առանձին կազմակերպությունների գործունեության մեջ և վերլուծում իրական վիճակը, տեսնում ենք, որ լուրջ անելիքներ ունենք սոցիալիստական սեփականության պահպանման համար մղվող պայքարի կազմակերպման ասպարեզում։ Այսօր մեր ժողովրդի ստեղծարար աշխատանքի, նրա բարեկեցության հետագա բարելավման ճանապարհին եղած խոչընդոտներից ամենավտանգավորը հակահասարակական երևույթներն են, մասնավորապես սոցիալիստական սեփականության հափշտակության դեպքերը, որոնք իրենց տարատեսակներով մնում են որպես վնասակար հանցագործություն։ Մեր ժամանակներում, մանավանդ ՍՄԿԿ XXIV համագումարը, երբ սովետական ժողովուրդը լուծում է կոմունիզմի կառուցման խնդիրները, որպես խիստ ծանր հանցագործություն պետք է որակվեն խուլիգանների, գողերի, կաշառակերների և գրպարտիչների գործողությունները։ Եվ պատահական չէ, որ այս խնդրին լուրջ կարևորություն տալով՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը համագումարին տված Կենտկոմի հաշվետվության մեջ ասաց. «Սովետական մարդու նոր կերպարը, նրա կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում են անցյալի մնացուկների դեմ մղվող մշտական, անդիչում պայքարով։ Չի կարող կոմունիստական բարոյականության հաղթանակ լինել, առանց վճռական պայքար մղելու նրա այնպիսի հակապատկերների դեմ, ինչպիսիք են շահամոլությունը, կաշառակերությունը, պորտաբուծությունը, զրպարտությունը, անստորագիր նամակները, հարբեցողությունը և այլն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, Երևան, 1971 թ., էջ 112)։

Ակնբախ է, որ որտեղ թույլ են հսկողությունը և պահանջկոտությունը, պատասխանատվության զգացումը և, իհարկե, անբավարար են զբաղվում նյութական պատասխանատու անձանց ընտրության ու նշանակման հարցով, այնտեղ պարարտ հող է ստեղծվում հափշտակությունների և վատնում-չարաշահումների համար։ Հաճախ այդ կապակցությամբ առանձին կոմունիստների հարցեր քննարկելիս՝ համապատասխան միջոցներ չեն ձեռնարկվում՝ ուժեղացնելու քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կոլեկտիվի անդամների շրջանում։ Կուսկազմակերպությունների միանգամայն անհանդուրժելի անտարբերության և բարեհոգության մասին է վկայում նաև այն, որ սոցիալիստական սեփականության հափշտակում-չարաշահումների համար կոմունիստների տույժերն իրոք մեղմ են եղել, և շրջկոմի բյուրոն չի հաստատել. 24 կոմունիստների հեռացրել է կուսակցության շարքերից, 30-ի տույժերը խստացրել։ Նման փաստեր կան «Երևանշին» գլխավոր վարչության, ներքին գործերի բաժնի պահակային ծառայության, պահածոների գործարանի, Երսառցակոմբինատի, կոշիկի ֆաբրիկայի և այլ կազմակերպություններում։



Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շրջանի առանձին հիմնարկ-ձեռնարկություններում, ղեկավարների ավելորդ բարեհոգությունից, սոցիալիստական գույքի հաշվառման վատ դրվածքից և թույլ հսկողությունից օգտվելով, բույն են դնում պետական և հանրային գույքի հափշտակողների խմբեր կամ անհատներ։ Եվ որտեղ նրանք անարգել գործում են, կոպիտ կերպով ոտնահարվում են սոցիալիստական օրինականության սկզբունքները։ Կադրերի ընտրության, առաջքաշման, տեղաբաշխման հարցերը լուծելիս առանձին ղեկավարներ առաջնորդվում են իրենց հանցավոր ընկերների գործունեությունն ամեն կերպ քողարկելու կամ բացահայտման վտանգից պաշտպանելու նշանաբանով։ Նման վիճակ էր տիրում «Հայգյուղտեխնիկայի» հանրապետական միավորման «Գյուղմոնտաժ» տրեստում։ Տրեստի կառավարիչ Հ. Հովհաննիսյանը, խախտելով ըստ քաղաքական և գործնական հատկանիշների կադրերի ընտրության սկզբունքը և ընդունված կարգը, տրեստին ենթակա ձեռնարկությունների պատասխանատու պաշտոններում աշխատանքի է նշանակել նախկինում արատավորված, դատված մարդկանց, որոնք, օգտվելով հսկողության բացակայությունից, չեն ապահովել պետական պլանների կատարումը, չարաշահել են իրենց պաշտոնական դիրքը, յուրացրել սոցիալիստական սեփականությունը։ Հ. Հովհաննիսյանը, ավտոտրանսպորտային ձեռնարկության դիրեկտոր է նշանակել անվստահելի, նախկինում դատված Շ. Խուրշուդյանին, որն այդ պոստում կալանավորվել է սոցիալիստական սեփականության յուրացման համար։

«Գյուղմոնտաժ» տրեստի № 2 մոնտաժային վարչության (նախկին պետ՝ Վ. Դանիելյան, գլխավոր ինժեներ՝ Ռ. Շարաֆյան) մի քանի աշխղեկներ, պաշտոնատար ու նյութական պատասխանատու այլ անձինք, օգտվելով վարչության ղեկավարների հսկողության բացակայությունից, հանցավոր համաձայնության գալով գյուղատնտեսության հետ առնչություն չունեցող կազմակերպությունների ղեկավարների հետ, անօրինական պայմանագիր են կնքել մոնտաժային և նորոգման աշխատանքներ կատարելու համար, կազմել կեղծ, փաստացի ծավալներին չհամապատասխանող կատարողական ակտեր, արել ավելի քան 300 հազար ռուբլու հավելագրում և 1972 թ. ութ ամսում յուրացրել 80 հազար ռուբլու պետական միջոցներ։ Կուսկազմակերպության թույլ վերահսկողության հետևանքով 1972 թ. հունիս-հուլիս ամիսներին նույն վարչության աշխատողները Մասիսի շրջանի գիշերօթիկ դպրոցի կաթսայատան և ջեռուցման ցանցի նորոգման համար 145.800 ռուբլու կատարողական ակտ են կազմել այն դեպքում, երբ այդ նույն գործը արել է այլ կազմակերպություն, լրացրել նաև գործուղման վկայականներ, դուրս գրել և յուրացրել 11.700 ռուբլի։ Նրանք Երևանի ֆիզիկայի ինստիտուտի կաթսայատան նորոգման և վերակառուցման անվան տակ 22.200 ռուբլու կեղծ փաստաթղթեր են ձևակերպել, մտացածին ցուցակ կազմել և յուրացրել 7 հազար ռուբլի։ Մինչդեռ, ըստ հիշյալ ինստիտուտի անցագրային բյուրոյի գրանցումների, № 2 մոնտաժային վարչության ոչ մի աշխատող ինստիտուտի տերիտորիա չի մտել։ Ավելին, օգտվելով տրեստի ղեկավարության բարեհոգությունից և մոնտաժային վարչության պետ Վ. Դանիելյանի հանցավոր անպատասխանատվությունից, գլխավոր ինժեներ Ռ. Շարաֆյանը 1972 թ. իր ձեռքով գրում է հրաման, որով տրեստի № 2 մոնտաժային վարչության պետ Վ. Դանիելյանին ազատում է զբաղեցրած պաշտոնից և նույն վարչության պետ նշանակում իրեն՝ ինքն էլ ստորագրելով հրամանը։ Այդ օրվանից նրա մոտ են գալիս աշխղեկներ, ինժեներներ, հաշվապահներ, որոնցից նա ընտրություն է կատարում, բայց ինչպես պարզվեց, ընտրություն իր ձևով՝ «Աշխատիր քեզ էլ պահել, ինձ էլ»։

Վատնում-չարաշահման յուրաքանչյուր դեպք չպետք է անտեսվի։ Մենք ղեկավարվում ենք այս սկզբունքով և գտնում, որ դրա կիրառումը կարևորագույն միջոց է սոցիալիստական սեփականության պահպանությունն ուժեղացնելու համար։ Շրջկոմի բյուրոն քննարկել է «Կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքը «Գյուղմոնտաժ» տրեստում և կուսակցական կազմակերպության խնդիր-

ները՝ ՀԿԿ Երքաղկոմի բյուրոյի 29/11—72 թ. որոշման լույսի տակ» հարցը։ Կադրերի ընտրության և սոցիալիստական սեփականության պահպանման գործում տեղ գտած թերությունների ու չարաշահումների համար՝ տրեստի կառավարիչ Հ. Հովհաննիսյանին, գլխավոր հաշվապահ Ս. Վարդանյանին, պլանբաժնի պետ Է. Մարգարյանին հայտարարել ենք խիստ նկատողություն՝ գրանցելով անձնական գործում, նկատողություն արել կադրերի ավագ տեսուչ Տ. Պողոսյանին և կուսակցությունից հեռացրել № 2 մոնտաժային վարչության նախկին պետ Վ. Դանիելյանին։

Վերոհիշյալ փաստերը վկայում են, որ տրեստի կուսկազմակերպությունը և նրա բյուրոն հանդես են բերել վտանգավոր անտարբերություն. չեն հոգացել կուսակցական-պետական կարգապահության ամրապնդման մասին, անբավարար են զբաղվել կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցով, անուշադրության մատնել հանրային ունեցվածքի պահպանության գործը։ Կուսշրջկոմի բյուրոն այդ ամենի համար կուսակցական պատասխանատվության է ենթարկել նաև տրեստի կուսբյուրոյի քարտուղար Է. Մանուկյանին։

Հափշտակությունների դեմ տարվող պայքարը միայն վարչական մարմինների գործը չէ։ Դրանք, որպես կանոն, կատարվում են քողարկված ձևով, այս կամ այն փաստաթղթի կեղծման և օրինական տեսք տալու միջոցով։ Հեղինակները հաճախ այն մարդիկ են, ովքեր կոչված են պահպանելու և խնայողաբար օգտագործելու պետական միջոցները։ Նրանք հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ են կամ պաշտոնատար այլ անձինք, որոնք վարչական աշխատողներից պակաս չգիտեն պետական միջոցների պահպանության կարևորության մասին։ Ցավալին միայն այն չէ, որ որոշ ղեկավար աշխատողներ պետական գույքի պահպանության նկատմամբ ցուցաբերում են հանցավոր անտարբերություն, այլև այն, որ նրանք երբեմն իրենք են մասնակից դառնում կամ հենց անմիջապես կատարում հափշտակություն։ Այսպես, շրջկոմի բյուրոն 1972 թ. նոյեմբերի 11-ին քննարկեց «Ցենտրխիմռեմստրոյմոնտաժ» տրեստի շիննորոգման մոնտաժային № 11 վարչությունում կուսակցական-պետական կարգապահության վիճակը։ Քննարկման ժամանակ, պլանների թերակատարումից բացի, հայտնաբերվեցին աշխատավարձի և նյութերի շռայլման ու հավելագրումների մի շարք փաստեր։ Շրջկոմի բյուրոն աշխատանքից ազատեց շինվարչության պետ Թ. Մնացականյանին՝ նրան հայտարարելով խիստ նկատողություն, գրանցելով հաշվառման քարտում։ Կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկվեցին նաև կուսբյուրոյի քարտուղարը և արհմիության շրջկոմի նախագահը։ Աշխատանքից ազատվեցին գլխավոր հաշվապահն ու գլխավոր ինժեները։

Կամ մի ուրիշ օրինակ։ 1972 թ. հունվարի 18-ի բյուրոյում «Շրջկոմի պլենումի որոշման կատարման ընթացքը «Հայկոոպի» նյութատեխնիկական մատակարարման բազայում» հարցի քննարկման ժամանակ պարզվեց, որ բազայի ղեկավարությունը, առանց վերադասի թույլտվության, ոչ-կոոպերատիվ կազմակերպություններին բաց է թողել ավտոդողեր, սառնարան, սարքավորումներ և այլն, իսկ առանձին անձանց՝ մանրածախ ապրանքները վաճառել մեծածախ գներով։

Եթե այսօր հարցը դրվում է այն առումով, որ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները և կուսկազմակերպությունների քարտուղարները միանգամայն անբավարար են զբաղվում սոցիալիստական սեփականության պահպանման համար և չարաշահումների դեմ մղվող պայքարի հարցով, ապա ի՞նչ ասել այն ղեկավարների և կուսկազմակերպությունների քարտուղարների մասին, որոնք իրենք են կատարում նման հանցանքներ (Ռ. Վիրաբյան, Ս. Ուզունյան, Վ. Վարդանյան, Գ. Խաչատրյան, Թ. Մնացականյան և այլն)։ Ի՞նչ կարգ ու կանոն կարող է լինել, երբ այստեղ խոսքը կոմունիստ ղեկավարի մասին է, որի պատասխանատվությունը պետք է ավելի բարձր լինի։

Սոցիալիստական սեփականության պահպանության համար մղվող պայքարը չպետք է նեղ հասկանալ։ Դրա ընդգրկման շրջանակները լայն են, ներառում են մի ամբողջ շարք խնդիրներ։ Հենց թեկուզ խնայողության ռեժիմի



կիրառումը այդ պայքարի բաղկացուցիչ մասն է։ Բանն այն է, որ մի քանի կիլոգրամ համակցված կերի, երշիկի կամ այլ մթերքի պակասորդի կամ հափշտակության համար դատի են տրվել և կուսակցությունից հեռացվել մի շարք կոմունիստներ, սակայն անտնտեսվարության, պետական միջոցներն աննպատակ ծախսելու, աշխատողների ունակությունները սխալ գնահատելու համար ոչ մի աշխատողի պատասխանատվության չեն կանչել ոչ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները, ոչ էլ կուսկազմակերպությունները։ Մի՞թե սոցիալիստական սեփականության վատնում չէ անտնտեսվարությունը։ Ահա մի ցայտուն օրինակ. վագոնների պարապուրդի համար շրջանի յոթ հիմնարկ-ձեռնարկություններ 1971—1973 թվականներին վճարել են ավելի քան 495.300 ռուբլի տուգանք։ Խոտանից առաջացած կորուստները 1974 թ. առաջին կիսամյակում կահույքի № 1 ֆաբրիկայում կազմել են 201 հազար, «Հայտրանսշին» տրեստի շինարարական առարկաների կոմբինատում՝ 51 հազար, էլեկտրատեխնիկական գործարանում՝ 27 հազար ռուբլի։

Շրջանի առանձին տրանսպորտային ձեռնարկություններում միանգամայն թույլ են կուսակցական-պետական կարգապահությունը, պահանջկոտությունը որոշ աշխատողների նկատմամբ։ Դրանից օգտվելով, երբեմն էլ հովանավորվելով՝ մի շարք վարորդներ օրերով և որոշ դեպքերում՝ ամիսներով պետական մեքենան օգտագործում են անձնական շահերի համար։ 1973 թ. հունիսին շրջանի վարչական մարմինները ստուգայց կազմակերպեցին երկու՝ ավտոտրանսպորտի մինիստրության № 1, առևտրի մինիստրության № 4 ավտոձեռնարկություններում. առաջինում բացակայում էր 74, երկրորդում՝ 14 մեքենա։ Նման դեպքերը բնորոշ են նաև շրջանի մյուս ավտոտնտեսություններին։ Մինչդեռ դրանց ղեկավարները պատշաճ կարգուկանոն չեն սահմանում հավաքակայաններում։ Կուսշրջկոմը, քննարկելով առանձին ղեկավարների վարքագծի հարցը, միշտ չէ, որ նրանց նկատմամբ խիստ միջոցներ է ձեռնարկում։ Հաճախ նրանց տալիս ենք ժամկետ և համապատասխան օգնություն, որպեսզի կարողանան շտկել թերությունները, համապատասխան եզրակացություն անել՝ վերակառուցելու իրենց գործունեությունը։

Ցավոք, կան ղեկավարներ, որոնք չարաշահում են այդպիսի հոգատարությունը և ավելի են խորացնում թերությունները, արմատավորում անպատասխանատվությունը։ Այդպիսի ղեկավարների նկատմամբ մենք այլևս ներողամտություն հանդես չենք բերում։ Ահա մի օրինակ։ Շրջկոմի բյուրոյի նիստում քննարկելով № 31 մեքենայացված շարասյան պետ Ս. Ուզունյանի հարցը, կուսակցական-պետական կարգապահության կոպիտ խախտումներ կատարելու, պաշտոնական դիրքը չարաշահելու, անտնտեսվարության, իր գործողություններով սոցիալիստական սեփականության յուրացմանը նպաստելու, շրջկոմի բյուրոյի որոշումներից եզրակացություն չանելու և շինարարական աշխատանքների առաջադրանքները չկատարելու համար, նրան հեռացրինք ՍՄԿԿ շարքերից։

Սոցիալիստական սեփականության պահպանության նկատմամբ անտարբերություն ցուցաբերելու, գողությունների ու հափշտակումների դեմ գործնական պայքար չկազմակերպելու համար շրջկոմի բյուրոն ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության մետաղյա կառուցվածքների գործարանի դիրեկտոր, ՍՄԿԿ անդամ Գ. Խաչատրյանին հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով անձնական քարտում և ազատեց դիրեկտորի պարտականությունից։ «Երևանշին» գլխավոր վարչության ղեկավարությունը (պետ՝ Ջ. Վարդանյան), կուսկոմիտեն (քարտուղար՝ Լ. Ղազարյան) միանգամայն անբավարար են վերահսկում իրենց ենթակա տնտեսությունների գործունեությունը, տեղ գտած թերությունների նկատմամբ ցուցաբերում են հաշտվողականություն։ Այդ ամենի հետևանքով ձեռնարկություններում աշխատող առանձին ղեկավար կադրեր դրսևորում են մեր հասարակության համար վտանգավոր ու խորթ բարքեր։ Այսպես, վարչության ավտոգրասենյակի նախկին պետ Վ. Վարդանյանը, կորցնելով կոմունիստի, ղեկավարի բարոյական կերպարը, զբաղվել է պետական միջոցների յուրացմամբ, դրամաշորթությամբ և

կաշառակերությամբ։ Իրեն շրջապատելով «նվիրված» գործընկերներով՝ վեց ամսվա ընթացքում նա գործի է ընդունում տարբեր մարդկանց և գրպանում նրանց անունով դուրս գրված 1.092 ռուբլի աշխատավարձը։ Չբավարարվելով սրանով՝ նա գրպանում է նաև 24 վարորդների անունով դուրս գրված դրամական պարգևի մի մասը։

Շրջկոմի բյուրոն Վ. Վարդանյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից և հեռացրեց դիրեկտորի պաշտոնից։ Կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկվեցին գործին տեղյակ և մասնակից մյուս կոմունիստները։ Բայց դեռ որքա՞ն ջանքեր պետք է գործադրեն «Երևանշին» վարչության ղեկավարությունն ու կուսկոմիտեն՝ նրանց թողած հետքերը և հետևանքները կոլեկտիվներում վերացնելու համար։

Այս կապակցությամբ բնութագրական են Վլադիմիր Իլյիչի՝ Ֆ. Ձերժինսկուն և Բոնչ Բրուևիչին ուղղած նամակները, որոնք այսօր էլ կարող են սթափեցնել, զգաստացնել մասնավորապես ղեկավարներին։ «Ընկ. Ձերժինսկի,— գրում է առաջնորդը,— իմ մեջ ծագում է լուրջ երկյուղ՝ չկա՞ արդյոք ծախսերի «չափազանցություն» իմ գարաժի համար, որը կարծեմ խիստ հսկողության տակ է վերցված Պետքաղվարչության կողմից։ Ժամանակը չէ՞ արդյոք «սեղմել» սույն հիմնարկությանը և կրճատել նրա վրա կատարվող ծախսերը։ Բոլոր ու բոլոր ծախսերը սեղմվում են։

Խնդրում եմ Ձեզ սույնը պարզաբանել «տեղակալներին», Ռիկովին և Ցյուրուպային, և հանձնարարել հուսալի, գործիմաց, գիտակ մարդու՝ ստուգել, թե չի՞ կարելի արդյոք կրճատել և սեղմել այդ հոդվածով կատարվող ծախսերը և շատ կրճատել (Վ. Ի. Լենին, Ղեկավարի հեղինակության մասին, Երևան, 1969, էջ 223)։

Առաջնորդի այս և ուրիշ նամակներ, բազմաթիվ ասույթներ պետք է, որ օրինակ ծառայեն մեր հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին, բոլոր կոմունիստներին։ Մեր սոցիալիստական էկոնոմիկայի առաջընթացի, կուսակցության XXIV համագումարի նախանշած տնտեսական ծրագրի լուծման շահերը պահանջում են ամենօրյա պայքար ծավալել հանրային ունեցվածքը պաշտպանելու, այն բազմապատկելու համար։ Հարկավոր է ամենուրեք, արտադրության բոլոր օղակներում կիրառել խնայողության խստագույն ռեժիմ, վերացնել անարտադրողական ծախսերը, հանդես բերել հաշվենկատություն ու տնտեսվարություն։

Քննարկվող խնդրին առնչվում է մի հարց ևս՝ պայքարը կաշառակերության դեմ։ Սա ևս անցյալի մնացուկ է և սոցիալիզմին խորթ երևույթ։ Ինչպես վարչական մարմինների, այնպես էլ առանձին հիմնարկ-ձեռնարկությունների կուսկազմակերպությունների կողմից վճռական պայքար չկազմակերպելու պատճառով կաշառակերության փաստերը դեռևս շարունակում են տեղ գտնել շրջանի առևտրական, շինարարական, առողջապահական և մի շարք այլ կազմակերպություններում։ Մինչդեռ գաղտնիք չէ, որ կաշառքը մեծ չարիք է մեր հասարակության համար և խոշոր վնաս է հասցնում աշխատավորության դաստիարակության և սոցիալիստական սեփականության պահպանման գործին։

Մեր գաղափարա-դաստիարակչական աշխատանքը պետք է լինի միայն համոզող։ Այն պետք է լրիվ չափով օգտագործել հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարում՝ ազնվության, աշխատասիրության, պետական ու հանրային սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունքի ոգով մարդկանց դաստիարակելու համար։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

**Վ. Գ. ՍԵՐՈԲՅԱՆ**
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ,
գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում անասնապահության զարգացմանը։ ՍՄԿԿ XXIV համագումարին կուսակցության Կենտկոմի հաշվետվության մեջ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Մեր առջև ամբողջ սրությամբ կանգնած է նաև գյուղատնտեսության այնպիսի կարևորագույն պրոբլեմ, ինչպիսին է անասնապահության հետագա վերելքը։ Բնակչությանն անխափան կերպով առավել արժեքավոր սննդամթերքներ մատակարարելու, այդ մթերքների նկատմամբ սովետական մարդկանց աճող պահանջմունքը բավարարելու համար նոր հնգամյակում պետք է խոշոր առաջընթաց քայլ կատարվի այդ բնագավառում» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 332)։

Այս տարվա սեպտեմբերին տեղի ունեցած ՀԿԿ Կենտկոմի պլենումը, քննության առնելով գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների գծով իններորդ հնգամյակի պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու և անասնապահությունը 1974—1975 թթ. կերով ապահովելու ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները, նշեց, որ ՍՄԿԿ XXIV համագումարից հետո անցած ժամանակաշրջանում Հայաստանի կուսակցական կազմակերպությունն ու գյուղատնտեսական մարմինները, կենսագործելով համագումարի կանխագծած ծրագիրը, որոշակի գործ են կատարել անասնապահության զարգացման բնագավառում։ Չնայած կլիմայական խիստ անբարենպաստ պայմաններին, հանրապետության անասնապահության աշխատողները ընթացիկ տարում զգալի հաջողությունների հասան անասնապահական մթերքների արտադրությունը և պետական վաճառքն ավելացնելու գործում։ Նոյեմբերի 1-ի տվյալներով, անցյալ տարվա նույն ժամանակի համեմատությամբ, կոլտնտեսություններում և սովխոզներում մսի արտադրությունն ավելացավ 7,3, ձվինը՝ 15, կաթինը՝ 0,6 տոկոսով։ Գերակատարվեցին նաև մթերքների պետական վաճառքի պարտավորությունները։ Էականն այն է, որ վերջին տարիներին անասնապահական մթերքների արտադրության աճը ժամանակավոր բնույթ չի կրել, դարձել է կայուն, սիստեմատիկ, որը ցույց է տալիս էկոնոմիկայի այս կարևոր ճյուղում ձեռնարկված միջոցառումների արդյունավետությունն ու տևականությունը։ Բավական է ասել, որ 1971—73 թթ., նախորդ հնգամյակի համեմատությամբ, տարեկան, միջին հաշվով, ավելի է արտադրվել 8 հազար տոննա միս, 35 հազար տոննա կաթ և 50 մլն ձու։

Մթերքների արտադրության աճի տեմպերը ավելի բարձր են եղել Շահում-

յանի, Հրազդանի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Մասիսի, Արագածի շրջանների տնտեսություններում։

Հաջողությունների հիմնական գրավականը կերի արտադրության ավելացման, դրանց վերամշակման, հանրային հոտի արոտային և մսուրային պահվածքի ավելի լավ կազմակերպման, անասնապահության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում տարված հետևողական աշխատանքն է։ Լուրջ տեղաշարժ կա անասնապահությունն արդյունաբերական եղանակներով վարելու մարզում։ Կենտրոնացված կապիտալ ներդրումների և կոլտնտեսությունների ֆինանսական միջոցների հաշվին կառուցվել ու շահագործման են հանձնվել անասնապահական մի շարք խոշոր ձեռնարկություններ, որոնց արտադրանքը զգալի տեսակարար կշիռ ունի։

Շատ շրջաններում արմատավորվել են մատղաշի և մթերատու անասունների ինտենսիվ կերակրումն ու աճեցումը, որոնք նպաստում են մթերքների արտադրության և եղած կերի օգտագործման արդյունավետության բարձրացմանը։ Բարելավվել է անասնապահական ֆերմաների զոոտեխնիկական և անասնաբուժական սպասարկումը. զգալիորեն բարձրացել է անասնապահության և կերարտադրության աշխատանքային պրոցեսների մեքենայացման աստիճանը։ 1971—1973 թթ. հանրապետությունում օգտագործվող կերն ավելացել է 25—26 տոկոսով, ընդ որում ավելի զգալի է բարձր սննդարժեքով կերերի աճը։ Այսպես, 1970 թ. համեմատությամբ, 1973 թ. սենաժն ավելացավ 119, համակցված կերը՝ 55, սննդի արդյունաբերությունից և վերամշակումից առաջացած կերը՝ 65 հազար տոննայով։ Շատ տնտեսություններում ծղոտը և խոտի զգալի մասն անասուններին տրվում է նախապես վերամշակված վիճակում, որը բարձրացնում է նրանց սննդարար արժեքը։ Բարելավվել են կերի պահպանումն ու օգտագործումը։

Կովերի ինտենսիվ կերակրման և ստացիոնար մսուրային պահպանման եղանակի արմատավորման շնորհիվ Շահումյանի, Հոկտեմբերյանի, Կալինինոյի, Մասիսի շրջաններում մեկ կովի միջին կաթնատվությունը հասել է 2.423—3.517 կգ-ի։ Անիի, Արթիկի, Ախուրյանի, Կամոյի շրջաններում ոչխարների կերակրման և խնամքի պայմանները բարելավելու շնորհիվ մեկ ոչխարից, միջին հաշվով, ստանում են 2,7—3,2 կգ բուրդ։

Մեր հանրապետությունում կան շատ անասնապահներ, որոնք պատվով կատարելով մրցությամբ ստանձնած պարտավորությունները, ձեռք են բերել լավագույն ցուցանիշներ։ Սիսիանի շրջանի Անգեղակոթի կոլտնտեսության հովիվ, Սոցիալիստական աշխատանքի հերոս Սուրեն Ղազարյանը, անցյալ տարի խնամած 400 ոչխարից պլանով նախատեսված 11,5-ի դիմաց, ստացել է 14 ցենտներ բուրդ։

Հնգամյակի որոշիչ տարվա հունվար—հուլիս ամիսներին Կալինինոյի շրջանի Շահնազարի սովխոզի կթվորուհի Հռոմ Շահբազյանը յուրաքանչյուր կովից ստացել է ավելի քան 2.600 կգ, իսկ Ստեփանավանի սովխոզ-տեխնիկումի կթվորուհի Բավական Տոնականյանը՝ 2.213 կգ կաթ։

Թռչնաբուծական և խոզաբուծական խոշոր ֆերմաներ ստեղծելու, կենդանիների խնամքի և կերակրման առաջավոր եղանակներ կիրառելու շնորհիվ Շահումյանի, Եղեգնաձորի, Անիի, Հոկտեմբերյանի, Նոյեմբերյանի, Շամշադինի և այլ շրջանների շատ տնտեսություններ հասել են բարձր մթերատվության։

Ներկայումս հանրապետության հանրային տնտեսություններում արտադրված ձվի 60 տոկոսը կամ 90,1 միլիոնը տալիս են թռչնաբուծական արդյունաբերության մասնագիտացված ֆաբրիկաները, որոնք արտադրությունը վարում են ժամանակակից տեխնոլոգիական պահանջներով։ Սրանք մեքենայացման բարձր մակարդակ ունեցող խոշոր տնտեսություններ են, որոնք տարեկան արտադրում են մի քանի միլիոն ռուբլու արժողության թռչնաբուծական մթերքներ և հումք։

Մասնագիտացման, կենտրոնացման և աշխատանքային պրոցեսների կոմպլեքս մեքենայացման շնորհիվ հանրապետության առանձին տնտեսություններ հասել են անհամեմատ բարձր ցուցանիշների։



Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունը 1973 թ. մեկ կովից, միջին հաշվով, ստացել է 4.592 կգ կաթ։ Հանրապետության 35 կոլտնտեսություններում և սովխոզներում կովերի միջին կաթնատվությունը բարձրը է եղել 3.000 կգ-ից։ Անիի շրջանի Մարալիկի, Աբովյանի շրջանի Կոտայքի կոլտնտեսությունները, Կամոյի շրջանի Կամոյի անվան սովխոզը և ուրիշ տնտեսություններ մեկ ոչխարից ստացել են 3,3—3,6 կգ բուրդ։ Հանրապետության 18 տնտեսություններում մեկ հավի ձվատվությունը տարեկան կազմել է 160—200 հատ։

Փորձը ցույց է տալիս, որ շատ տնտեսություններում անասունների մթերատվության ցածր մակարդակը ոչ թե բնակլիմայական կամ տնտեսական ծանր պայմանների հետևանք է, այլ՝ կազմակերպական և մասնագիտական անբավարար աշխատանքների։ Այս առումով լուրջ խնդիր է բոլոր տնտեսություններն առաջավորների ձեռք բերած բնագծերին հասցնելը։

Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումում՝ դեռևս լուրջ թերություններ կան գյուղատնտեսության այս կարևորագույն ճյուղի կազմակերպման ու ղեկավարման գործում։ Անասնապահության արտադրության ծավալով մեր հանրապետությունը առայժմ չի հասել ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված մակարդակին։ Ցավալի է, որ Հայաստանն անասունների մթերատվության մակարդակով Սովետական Միությունում զբաղեցնում է վերջին տեղերից մեկը, ցածր է անասնապահության շահութաբերությունը։ Այստեղից հետևում է, որ գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային մարմինները, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարները և մասնագետներն ամենուրեք պետք է խորապես ուսումնասիրեն բարձր ցուցանիշների հասած տնտեսությունների աշխատանքի կազմակերպման, մասնագիտական սպասարկման և անասնապահության բնագավառի մյուս հարցերը, առաջավոր փորձն ու փտության նվաճումներն արմատավորեն ետ մնացող տնտեսություններում։

1973 թ. ՀՍՍՀ սովխոզներն անասնապահական մթերքների արտադրանքի իրացումից կրել են 2,4 մլն ռուբլու վնաս. մեկ կովի կաթնատվությունը կազմել է 1.638 կգ, մեկ ոչխարի բրդատվությունը՝ 2,2 կգ, իսկ հավերի ձվատվությունը՝ 132 հատ։ Այս ցուցանիշները Միության միջին մակարդակից ցածր են 32—43 տոկոսով։

Առանձին շրջաններում անասնապահական մթերատվության ցուցանիշները մի քանի անգամ ցածր են միութենական և նույնիսկ հանրապետական միջին մակարդակից։ Այսպես, Վարդենիսի, Ամասիայի, Ազիզբեկովի, Կրասնոսելսկի, Թալինի շրջաններում մեկ կովից 1973 թ. ստացվել է, միջին հաշվով, 1.100—1.270 կգ կաթ. տասը շրջաններում մեկ հավից ստացվել է 48—80 ձու. Ամասիայի, Ազիզբեկովի, Արարատի, Եղեգնաձորի, Գորիսի, Գուգարքի շրջաններում մեկ ոչխարից ստացվել է 1,4—1,9 կգ բուրդ։

Հանրահայտ է, որ անասնապահության զարգացման ամենակարևոր պայմանը կերի արտադրության մակարդակի բարձրացումն է ու կայուն բազայի ստեղծումը, կերի ճիշտ օգտագործումը։ Փորձը ցույց է տալիս, որ կերի արտադրության որոշ աճի առկայությունը դեռևս չի ապահովում հանրային անասնապահության մթերատվության ավելացման պահանջները։ Շատ տնտեսություններ մսուրային շրջանում շարունակում են անասուններին պահել միայն կենսապահ կերով, որի պատճառով ստանում են շատ ցածր արտադրանք՝ չնայած կերի և աշխատանքային միջոցների անհամեմատ բարձր ծախսումներին։ Պետք է ասել, որ ընդհանրապես հանրապետության կերային ռեսուրսները դեռևս անբավարար են։ 1973 թ. յուրաքանչյուր պայմանական կովի հաշվով մսուրային շրջանի համար կուտակվել է 10 ցենտներ միավոր կեր կամ օրական մեկ գլխին շուրջ 5 կերի միավոր, որը կազմում է պահանջի 75—80 տոկոսը։ Առանձին շրջաններում (Թալին, Եղեգնաձոր, Ազիզբեկով, Ապարան) կուտակված կերը կազմել է պահանջի 50—55 տոկոսը։

Անասունների կերակրման այսպիսի սուղ պայմաններում մեր հանրապետության շատ տնտեսություններում անտնտեսվար են օգտագործում կերը։

Սովետական Միության շատ տնտեսություններում արդեն պրակտիկա է դարձել կոշտ և հատիկային կերի վերամշակումը, գրանուլացումը, խոտալյուրի պատրաստումը, սպիտակուցա-վիտամինային կերի օգտագործումը, կերի դրոժավորումը և այլն։ Մինչդեռ այդ եղանակները մինչև այժմ մեզ մոտ, գրեթե, կիրառություն չեն գտել։ Մեր հանրապետության տնտեսություններում մաքուր վիճակում է օգտագործվում նաև զգալի քանակությամբ հացահատիկային կեր, որի արժեքը 20—25 տոկոսով կբարձրանա, եթե դրանք վերածվեն համակցված կերի։ Մինչև այժմ ոչ մի կոլտնտեսությունում և սովխոզում չունենք մեքենաների այնպիսի կոմպլեքս, որով հնարավոր լինի անհրաժեշտ նախապատրաստման և վերամշակման ենթարկել տեղում արտադրվող կերը։ Այս տարի նկատվում է որոշ տեղաշարժ. մասնավորապես նախատեսվել է բոլոր խոշոր կոլտնտեսություններում ու սովխոզներում կառուցել կոշտ և հյութալի կերի վերամշակման կերախոհանոցներ ու արտադրամասեր, իսկ որոշ տնտեսություններում նաև համակցված կերի արտադրության գործարաններ։ Արդեն գործում է Աբովյանի շրջանի Կապուտանի կոլտնտեսության կերախառնուրդների պատրաստման արտադրամասը, 4 տնտեսություններում շուտով շահագործման կհանձնվեն նույնատիպ ձեռնարկություն-գործարաններ։ Կառուցվում են նաև համակցված կերի 3 գործարաններ։

Մեր կարծիքով, լուրջ փոփոխությունների կարիք ունի հանրապետության համակցված կերի արտադրության ներկա վիճակը։ Ինչպես հայտնի է, Հայաստանը մինչև այժմ ունի այդպիսի պետական միայն մեկ գործարան, որտեղ ծանրաբեռնվածության և համապատասխան արտադրական ու պահեստային անհրաժեշտ մակերեսների բացակայության պայմաններում հնարավոր չէ արտադրել պահանջվող բոլոր տեսակի կերերը և ապահովել դրանց բարձր որակը։

Անասնապահության զարգացման մյուս կարևոր հարցը նրա մասնագիտացումն է, կենտրոնացումը և կոմպլեքսային մեքենայացումը։ Ներկայումս աշխատանքի արտադրողականության և արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացման հիմնական ուղին աշխատանքային պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն է, որը հնարավոր է կիրառել միայն անասունների շատ գլխաքանակ կենտրոնացնելու պայմաններում։ Ժամանակակից մեքենայացված անասնապահական արտադրամասերը հանդես են գալիս որպես թռչնաֆաբրիկաներ, խոզի և տավարի մսի կամ կաթի ու բրդի արտադրության ֆաբրիկաներ և կոմպլեքսներ։ Սակայն դրանք չեն կարող և չպետք է փոխարինեն կոլտնտեսային-սովխոզային անասնապահական ֆերմաներին, որոնց բարելավման գործը, գրեթե, աչքաթող է արվել։ Կոլտնտեսություններում և սովխոզներում շատ քիչ միջոցներ են հատկացվում կապիտալ շինարարության և անասնապահական ֆերմաների աշխատանքային պրոցեսների մեքենայացման համար, որի պատճառով ֆերմաները մնում են թույլ մեքենայացված և ցածր արտադրական կարողություններով։ 1973 թ. հանրապետության սովխոզների 10,1 և կոլտնտեսությունների 16,6 տոկոսն ունեցել է կովերի 100-ից պակաս գլխաքանակ։ Կոլտնտեսային խոզաբուծական ֆերմաների 34 և սովխոզային ֆերմաների 18,1 տոկոսն ապահովել են մերուների 25-ից պակաս գլխաքանակ։ Պարզ է, նման ֆերմաներում հնարավոր չէ կոմպլեքսային մեքենայացում կատարել, և տեղադրվող նույնիսկ փոքր արտադրողականության մեքենաները չեն կարող արդյունավետ օգտագործվել։ Անասունների մթերատվության բարձրացման, հատկապես կաթի, տավարի ու խոզի մսի արտադրության ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման շահերը պահանջում են կոլտնտեսությունների ու սովխոզների փոքր և միջին մեծության ֆերմաներում ստացված ամբողջ մատղաշի աճեցումը կենտրոնացնել մասնագիտացված տնտեսություններում, որտեղ հնարավոր կլինի կիրառել կոմպլեքսային մեքենայացում։ Այս բնագավառում կարևոր դեր պետք է հատկացնել մատղաշների աճեցման ու բտման փայատիրական միջտնտեսային ձեռնարկությունների կազմակերպմանը։

ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշմամբ շատ շրջաններում արդեն ստեղծվել են միջտնտեսական փայատիրական կազմակերպություններ, որոնք 1978 թ. պետք է ունենան 80 տարբեր տեսակի խոշոր գյուղատնտեսական կոմպլեքսներ։

Մեր հանրապետության պայմաններում անասնապահական մթերքների արտադրության ավելացման խոշոր ռեզերվ է կենդանիների ստերջության վերացումը։ Ամեն տարի տնտեսությունները այս պատճառով կորցնում են 17—18 հազար գլուխ հորթ, 78—79 հազար գառ և 35—36 հազար խոճկոր։

Ստերջության դեմ տարվող պայքարում էականը անասունների սերմնավորման գործի ճիշտ կազմակերպումն է, որը շատ տնտեսություններում բարձիթողի է։ Այս բնագավառում առաջավոր տնտեսությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ վճռական դեր կարող են կատարել անասունների սերմնավորման կոոպերատիվ կազմակերպությունները, որոնք պետք է կոմպլեկտավորել բարձրորակ մասնագետներով։

Խիստ կարևոր հանգամանք է անասնապահական ֆերմաների մասնագիտական սպասարկման մակարդակի բարձրացումը։ Հենց մասնագիտական անբավարար սպասարկման պատճառով է, որ ամեն տարի զանազան հիվանդությունների և բարձր ստերջության պատճառով տնտեսությունները կորցնում են մեծ քանակությամբ անասնապահական մթերքներ։ ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրությունը և նրա շրջանային մարմինները պետք է հոգան, որ մասնագիտական միջոցառումները պարտադիր դառնան բոլոր տնտեսությունների և արտադրական ճյուղերի ղեկավարների համար։ Վերոհիշյալ աշխատանքների անթերի կատարումն առանձնահատուկ նշանակություն է ստանում հատկապես այս տարի, քանի որ բնակլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով անասնապահությունն ավելի քիչ է բավարարված կերով։ Այժմ պետք է խստորեն հետևել յուրաքանչյուր կիլոգրամ կերի արդյունավետ օգտագործմանը, անասուններին հիվանդություններից զերծ պահելուն, նրանց խնամքի ու պահպանման պայմանների բարելավմանը։

ՀԿԿ Կենտկոմի պլենումը մարտական խնդիր է դրել մեր հանրապետության գյուղատնտեսության, մասնավորապես, անասնապահության բնագավառում աշխատողների առջև. 1975 թ. մսի արտադրությունը հասցնել 109,2, կաթինը՝ ավելի քան 435 հազար տոննայի, բրդինը՝ 4.550 տոննայի, ձվինը՝ մոտ 370 մլն հատի։ Այս տարվա պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը հաստատուն հիմք պետք է հանդիսանա եկող տարվա համար։

Սկսվում է անասնապահության ամենապատասխանատու՝ մսուրային շրջանը։ Կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական օրգանների առաջնահերթ խնդիրն է՝ մոբիլիզացնել բոլոր ուժերն ու հնարավորությունները, կազմակերպված անցկացնելու անասունների ձմեռումը, պահպանելու և ավելացնելու անասունների գլխաքանակը, մասնավորապես մայրական կազմը, ամենայն արդյունավետությամբ օգտագործելու կերը, խնայողաբար ծախսումներով ստանալ ավելի շատ մթերքներ։

Հանրապետության անասնապահները, ինչպես և գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողները ջերմորեն արձագանքեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «1974 թ. հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշմանը։ Այդ մրցությունը լայնորեն ծավալվել է մեր հանրապետության կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում։ Անասնապահության բնագավառի բոլոր աշխատողները պայքարում են պատվով կատարելու 1974 թ. պետական առաջադրանքները, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵՆՔ ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՄԱՆ ԽԹԱՆՆԵՐԸ

**Ֆ. Ս. ՉՈԲԱՆՅԱՆ**

*ՍՄԿԿ XXIV համագումարը, կանխորոշելով իններորդ հնգամյակում երկրի էկոնոմիկայի զարգացման գլխավոր խնդիրները, միաժամանակ նշեց դրանց լուծման ուղիները, որոնցից հիմնականը գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է, աշխատանքի տեխնիկական առավել զինվածությունը։ Ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելու... մեջ է մարդկային տեխնիկայի ողջ պրոգրեսիվ աշխատանքը. նշում էր Վ. Ի. Լենինը (տե՛ս Երկեր, հ. 1, էջ 115)։*

*ՍՍՀՄ-ում ամեն տարի ներդրվում է մեծ ծավալով նոր տեխնիկա։ Այսպես, իններորդ հնգամյակի անցած տարիներին երկրի արդյունաբերական ձեռնարկություններում արմատավորվել են տասնյակ հազարավոր մետաղահատ հաստոցներ, դարբնոցա-մամլակային և ձուլող մեքենաներ, ինչպես և այլ սարքավորումներ։ Ընդ որում, այդ ագրեգատներն աչքի են ընկնում մեծ հզորությամբ։ Նոր տեխնիկայի ներդրման բազայի վրա պարբերաբար կատարելագործվում է արտադրության տեխնոլոգիան։ ՍՄԿԿ XXIV համագումարը, նշելով սովետական գիտության և տեխնիկայի հաջողությունները, խնդիր դրեց հասնելու ամբողջ արտադրության բարձր մակարդակի։ «...Ինչպես հերթական խնդիրների, այնպես էլ տևական հեռանկարների տեսակետից,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— առաջին տեղում է դրվում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 73)։*

*Այդ նպատակով համագումարը նախատեսել է մի շարք միջոցառումներ, որոնց կենսագործումը էապես կարագացնի գիտատեխնիկական առաջընթացը ժողտնտեսության մեջ։ Մասնավորապես նախատեսվում է ստեղծել աշխատանքային նոր գործիքներ, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական հատկություններով կգերազանցեն համաշխարհային լավագույն նմուշները։*

*Սակայն արդյունաբերության մի շարք ճյուղերում չեն կատարվում ժամանակակից տեխնիկայի ստեղծման և ներդրման առաջադրանքները։ Այսպես, ըստ ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների որպես կանոն չի իրականացվում ծրագրված յուրաքանչյուր երրորդ միջոցառումը։ Մեր հանրապետությունում, 1973 թ. արդյունաբերության մեջ նախատեսված 357 տեխնիկական միջոցառումից չի իրագործվել 38-ը։ Առաջավոր տեխնոլոգիայի, մեքենայացման և ավտոմատացման բնագավառում առաջադրանքները սիստեմատիկաբար թերակատարում են ՀՍՍՀ Մինիստրների սովետի գունավոր մետալուրգիայի վարչությունը և ՀՍՍՀ մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը։ Գիտության ու տեխնիկայի նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ արմատավորելու վերաբերյալ միութենական կառավարության և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի հաստատած պլանի համաձայն, 1974 թ. առաջին կիսամյակում նախատեսվել է 365 միջոցառում, որից լրիվ ծավալով իրականացվել է 289-ը, մասնակի չափով՝ 52-ը։ Քանչորս միջոցառումների իրականացման նպատակով դեռևս ոչինչ չի ձեռնարկվել։*

*Զգալիորեն թերակատարվել են նաև հաշվողական տեխնիկայի ներդրման պլանները. առաջադրանքները կատարել է միայն «Հայէլեկտրալույս» միավորումը։*



*Նոր տեխնիկան և տեխնոլոգիան դանդաղ են ներդրվում Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ֆրեզերային հաստոցների, Լենինականի հղկող հաստոցների և մի շարք այլ գործարաններում։ Վերոհիշյալ ձեռնարկություններում տարիներ շարունակ թողարկվում են հին մոդելի, նվազ արդյունավետ հաստոցներ։*

*Ժամանակակից տեխնիկայի ներդրման պլանների թերակատարման հիմնական պատճառը տնտեսական խթանման սիստեմում առկա թերություններն են։ Այդ սիստեմը տնտեսական ռեֆորմից հետո գրեթե նույնն է մնացել (պարգևատրում, նոր տեխնիկայի յուրացում և այլ ֆոնդեր), իսկ զգալիորեն փոխվել է տնտհաշվարկային խթանման ընդհանուր սիստեմը (արտադրության զարգացման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների, նյութական խրախուսման ֆոնդեր)։ Օրգանական միասնություն չկա նոր տեխնիկայի զարգացման և ընդհանուր տնտհաշվարկային խթանման միջև։*

*Նորագույն տեխնիկայի արմատավորման արագացմանը խոչընդոտ է նաև այն հանգամանքը, որ մեքենաների, սարքավորումների ներդրումը ժամանակավորապես իջեցնում է տվյալ ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշները (արտադրանքի իրացում, շահույթ, շահութաբերություն)։ Այստեղից էլ՝ հակասություն է ծագում առանձին ձեռնարկությունների և ժողտնտեսության շահերի միջև։*

*Նոր տեխնիկայի ներդրման ծախսերը, որպես կանոն, փոխհատուցվում են 3—4 տարի հետո, որը ձեռնարկության համար տնտեսապես ձեռնտու չէ։ Մեր կարծիքով, այդ հակասությունը վերացնելու համար նպատակահարմար է տվյալ ձեռնարկությանը հատկացնել համապատասխան գումար այն մարելու պայմանով։ Այն ոչ միայն լիովին կփոխհատուցի կատարված ծախսերը, այլև զգալի շահույթ կապահովի հենց առաջին տարիների համար։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը բազմակողմանի բացահայտելով գիտատեխնիկական առաջընթացի վճռորոշ դերը մեր էկոնոմիկայի զարգացման ասպարեզում, մեծ ուշադրություն դարձրեց ձեռնարկությունների տնտեսական շահագրգռվածության բարձրացմանն ու նոր տեխնիկայի արմատավորմանը։ Այժմ առանձնապես է շեշտվում կուսակցության XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ առաջադրված խնդիրների լուծման նշանակությունը. «Եղած դժվարությունները հաղթահարելու համար հարկավոր է, մի կողմից, ապահովել համապատասխան գիտական կազմակերպությունների ավելի մեծ հրջադարձը դեպի արտադրության առավել կարևոր խնդիրներ և, մյուս կողմից, ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք ձեռնարկություններին ստիպեն թողարկել արտադրանքի նորագույն նմուշներ, բառիս բուն իմաստով վազել գիտատեխնիկական նորույթների ետևից և ոչ թե դրանցից փախչել, պատկերավոր ասած, ինչպես սատանան խնկից։ Առավել արտոնյալ վիճակի մեջ պետք է դրվեն այն կոլեկտիվները, որոնք իրոք պայքարում են տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործման համար, ժամանակակից պահանջներին համապատասխան արտադրանք թողարկելու համար»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 74)։*

*Տեխնիկական առաջընթացի բարձր տեմպերի ապահովման հիմնական լծակներն են նոր տեխնիկայի յուրացման և արտադրության զարգացման ֆոնդերը, գնագոյացումը և նյութական խրախուսումը, ֆոնդավճարը և այլն։ Համառոտակի նշենք այդ լծակների օգտագործման կատարելագործման ուղիները։*

*Նոր տեխնիկայի արդյունաբերական յուրացման առաջին փուլի բարձր ծախսերը փոխհատուցելու համար ձեռնարկություններն օգտվում են նոր տեխնիկայի յուրացման ֆոնդից։ Վերջինիս հիմնական թերությունն այն է, որ հաճախ չի փոխհատուցում յուրացման առաջին տարվա բարձր ծախսերը։ Մյուս կողմից, այդ ֆոնդի հաշվին երբեմն հատուցվում են ձեռնարկության անկազմակերպ աշխատանքի հետևանքով առաջացած կորուստները։ Դա վկայում է նորմատիվային բազայի և յուրացման ֆոնդի հատուկ հրահանգավորման բացակայությունը։ Յուրացման ֆոնդը նպատակահարմար է ստիճանա-*

օգտագործելու գործում։ Տնտեսական այդպիսի սահմանափակությունն ակնհայտ է դառնում հատկապես տնտեսավարման նոր սիստեմի պայմաններում։

Առանց կարգավորելու տեխնիկական առաջընթացի պլանավորման հարցերը, խրախուսման ամենակատարելագործված սիստեմն անգամ չի կարող լրիվ չափով արդյունավետ լինել։ Յուրաքանչյուր ձեռնարկություն պարտավոր է կազմել նոր տեխնիկայի արմատավորման ամփոփ պլան, որը, մեր կարծիքով, ճիշտ կլինի մտցնել տեխարդֆինպլանի մեջ, որպես ինքնուրույն բաժին։ Դա զգալի կբարձրացնի աշխատողների պատասխանատվությունը նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման բնագավառում։

Ներկայումս նոր տեխնիկայի պլանավորման հարցերով զբաղվում են ձեռնարկությունների բազմաթիվ օղակներ՝ տեխնիկական, կոնստրուկտորական, գյուտարարական և ռացիոնալիզատորական բյուրոները, տեխնոլոգիայի, գլխավոր մետալուրգի, տեխնիկական ինֆորմացիայի բաժինները. չկա մեկ միասնական ծառայություն, որը զբաղվի նոր տեխնիկայի մշակման և արմատավորման հարցերով։ Շատ ձեռնարկություններում ցածր է նոր տեխնիկայի տնտեսական արդյունավետության հաշվարկումների մակարդակը, իսկ մի մասում այդպիսի հաշվարկներ ընդհանրապես չեն արվում։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, նոր տեխնիկայի արմատավորման պլանի կատարումը պետք է հանդիսանա ձեռնարկությունների գործունեության գնահատման կարևորագույն պայմանը։

ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունում նոր տեխնիկայի ստեղծման և մասսայական արտադրության համար հիմնվել է գիտության և տեխնիկայի զարգացման ֆոնդ, որը գոյանում է շահույթից կատարվող մասհանումների հաշվին։

Հատկապես ուշագրավ է արտադրանքի ճյուղային ատեստավորումը։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ ատեստավորման առանձնահատկությունն ամբողջ արտադրանքի ընդգրկումն է։ Այն բաժանվում է բարձր, առաջին և երկրորդ կարգերի։ Բարձրակարգ է համաշխարհային ստանդարտներին համապատասխանող արտադրանքը, առաջինն ընդգրկում է էկոնոմիկայի տվյալ փուլին համապատասխանող արտադրանքը, իսկ երկրորդը՝ մնացած արտադրանքն է, որը ենթակա է կատարելագործման։

ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունում աշխատանք են ծավալում՝ խրախուսման ֆոնդերը կախման մեջ դնելու բարձր և առաջին կարգերի արտադրանքների տեսակարար կշռի մեծությունից։ Բացի այդ, խրախուսման միջոց է նաև բարձր կարգի արտադրանքի գների բարձրացումից ստացվող շահույթը։ Իսկ երկրորդ կարգի արտադրանքի գները սահմանվում են ցածր, որպեսզի այն շահութաբեր չլինի, հանվի արտադրությունից։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է բարձրացնել համապատասխան մինիստրությունների պատասխանատվությունը ճյուղի տեխնիկական մակարդակի բարելավման համար։

ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության դրական փորձը տարածվում է մեքենաշինության մյուս ճյուղերում։ Այժմ արտադրական միավորումներում ստեղծվում են ռեզերվային ֆոնդեր, որոնք նպատակին ծառայեցնելու դեպքում կարագացնեն տեխնիկական առաջընթացը։

Արտադրամիավորումների կազմակերպումը տեխնիկական առաջընթացի արագացման նոր հեռանկարներ է ստեղծում։ Մինչ այդ փոքր ձեռնարկությունները չէին կարող զգալիորեն նորացնել սարքավորումները։ Այժմ այդ հնարավորությունը կա. արտադրամիավորումն ի վիճակի է ավելի ճկուն տեխնիկական քաղաքականություն իրականացնելու։

Այսպիսով, նոր տեխնիկայի ստեղծման, ներդրման և օգտագործման տնտեսական խթանման սիստեմը դեռ կարոտ է կատարելագործման։ Մեր կարծիքով, վերը նշված թերությունների վերացումը դրականորեն կանդրադառնա նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման տնտեսական խթանման վրա։

# ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

Հրապարակելով սույն հոդվածը արտասահմանյան մամուլից, սովետական շաբաթաթերթը շեշտում է. ամբողջությամբ առած, հեղինակի տպավորությունները անտարակույս ուշագրավ են։

## ՍԻԲԻՐԸ-ՀԱՆՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ*

ԱԼՖՐԵԴ ՄԱՔՍ

Սիբիրը նոր Էլդորադոն է, ճանապարհ բացողների երկրամասը՝ անծայրածիր տարածություններ, նվազ յուրացված հանքեր, էներգետիկ և հանքային չտեսնված հարուստ ռեսուրսներ։ Սիբիրը Արևելքի «Հեռավոր Արևմուտքն» է։ Նավթահանքերի յուրացման տեմպերն այստեղ ինչ-որ բանով հիշեցնում են կալիֆոռնիական «ոսկե տենդը»։

Հայտնի է, որ Արևմուտքն ունի էներգետիկ ռեսուրսների անհետաձգելի պահանջարկ։ ՍՍՀՄ-ն, իր հերթին, հայտարարում է, որ պատրաստ է բաժանելու այդ հումքը զարգացած արդյունաբերական այն երկրների հետ, որոնք իրեն կտրամադրեն սարքավորումներ, տեխնոլոգիա և վարկեր։ Եվ այս վիթխարի ձեռնարկումը հաջողության կհասնի միայն այն դեպքում, եթե, տիեզերքի նման, այն համակի մարդկանց երևակայությունը, հրապուրի լավագույն մտածողներին և եթե այն ապահովված լինի հաջողության առաջին պայմանով— ժամանակով։

Սիբիրի արդյունաբերական յուրացումն անմիջականորեն կապված է Արևմուտքում բոլորին մտահոգող հարցի հետ. արդյոք, կենսակա՞ն, հեռանկարայի՞ն է լարվածության թուլացումը։ Այլ խոսքով՝ իրո՞ք անհրաժեշտ է այն Սովետական Միությանը։

### ԱՆՄՈՌԱՑ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ

Կենսականորեն կարևորվող այդ հարցի պատասխանը որոշեցի գտնել ուղղակի տեղում— սկզբում Մոսկվայում, որտեղ ես վերջին 13 տարում եղա երրորդ անգամ, ապա Սիբիրում, միջինասիական հանրապետություններում և Հեռավոր Արևելքում։ Կտրեցի-անցա մոտ 20 հազար կմ և զրուցեցի սովետական հարյուրավոր մարդկանց հետ— ինչպես երկրի հայտնի գործիչների, ուսուցիչների, հետազոտողների ու գիտնականների, տնտեսագետների և պլանային աշխատողների, նույնպես և հասարակ մարդկանց՝ բանվորների, գյուղացիների, տնային տնտեսուհիների, դպրոցականների, ուսանողների, ծառայողների հետ։ Տեսա՝ ինչպես են նրանք ապրում, աշխատում, սովորում և ինչպես են հանգստանում։ ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի Ակադեմավանում հանդիպեցի սովետական ամենաականավոր գիտնականներից մեկին՝ ակադեմիկ Լավրենտևին։ Այստեղ 40 հազար բնակիչներից 10 հազարը գիտական աշխատողներ են։ Գիտական կադրերի համակենտրոնացումը, բազում դիսցիպլիններ ներկայացնող բարձրորակ մասնագետների առկայությունը, սիբիրյան ընդերքի չակնկալված գանձերի բացահայտումը, ինչպես և Օբի վտակի «բնական ծովափին» փռված անտառային քաղաքի գեղեցկությունը,— այս ամենը Ակադեմավանը դարձնում է անկրկնելի ձգողական բևեռ։ Հենց այստեղ, բոլոր գիտությունների խաչմերուկում, մշակվում է նոր տեխնիկան, որը հնարավորություն է ընձեռում օգտակար հանածոների պաշարների հետազոտումից անցնելու դրանց օգտագործմանը, հաղթահարելով կլիմայական արգելքները։

Միխայիլ Ալեքսեևիչ Լավրենտևն ամենից ավելի հպարտանում է գիտնականներին Ակադեմավան ներգրավելու իր ինքնատիպ մեթոդով։

— Ես հետախուզում եմ ողջ Սիբիրը և ջանում հավաքել որքան կարելի է շատ «հում նյութ»,— պատմում է գիտնականը։— Պրոցեսի ընտրությունը բաղկացած է երեք փուլից. սկզբում հայտարարություն մարդկանց հավաքագրման մասին և գրավոր ստուգում։ Այնուհետև 200

* Սույն հոդվածն արտատպված է Փարիզի «Ռեալիթե» հանդեսից։

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՄԱՔԱՌՈՒՄՆԵՐՈՒՄ ԸՆԴՀԱՏՎԱԾ ԿՅԱՆՔ

(ՎԼԱԴԻՍԼԱՎ ԿԱՍՊԱՐՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**

**Կասպարովին շատ լավ գիտեի արտասահմանում, որտեղ նա վտարանդի էր. 1905 թ. առաջին հեղափոխությունից հետո բոլշևիկյան կազմակերպության անդամ էր, վայելում էր բոլոր այն բոլշևիկների խոր հարգանքը, որոնց ես առիթ եմ ունեցել հանդիպելու:**

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

1.

Մեր հայրենիքի ամեն մի ժողովուրդ ունի սխրանքներով լի իր հեղափոխական ավանդույթները, որոնք սերտորեն կապված են կոմունիստական կուսակցության, Վ. Ի. Լենինի և նրա մերձավոր զինակիցների անվան հետ: Պրոլետարական հեղափոխության իրականացման, մեծ Հոկտեմբերի հաղթանակի ու նրա նվաճումների ամրապնդման համար Վ. Ի. Լենինի գլխավորությամբ մղած պայքարի բովում կոփվել են բազմաթիվ դասակարգի ազատագրության գործին անսահման նվիրված, կայուն, կարգապահ, աշխատավոր մասսաների հետ բյուր թելերով կապված շատ անձնուրաց հեղափոխականներ: Մեր երկրի եղբայր ազգերի ու ժողովուրդների ներկայացուցիչներն են նրանք, լենինյան հին գվարդիայի անխոնջ մարտիկները, որոնց կյանքը կապված է եղել Վ. Ի. Լենինի, նրա անմահ ուսմունքի ու հեղափոխական սխրանքների հետ: Նրանց մեջ էր նաև Իլյիչի մերձավոր զինակիցներից Վլադիսլավ Կասպարովը: Ընկեր Սլավա— այսպես էին կոչում նրան բոլշևիկները, պրոֆեսիոնալ հեղափոխականներն ու մերձավոր ընկերները: Կուսակցության նշանավոր գործիչ Վլադիսլավ Կասպարովի կյանքն ու գործունեությունը սերտորեն կապված է Անդրկովկասի հեղափոխական շարժումների, կոմունիստական կազմակերպությունների պատմության, Լենինի տիտանական գործունեության հետ: Լինելով լենինյան հին գվարդիայի պրոֆեսիոնալ հեղափոխական, զինված մարքս-լենինյան տեսությամբ, նա բարձր է պահել կոմունիստի վեհ կոչումը, անողոք պայքարել ցարիզմի և ամեն տեսակ կեղեքիչների դեմ, հանուն բազմաթիվ դասակարգի և աշխատավոր մարդկության ազատագրության:



2.

Վլադիսլավ Մինասի Կասպարովը (Կասպարյան) (1884—1917) տակավին ինը տարեկան էր, երբ նրա ծնողները Խանքենդ գյուղաքաղաքից փոխադրվեցին Շուշի: Նախնական կրթությունն ստացել է Գանձակի Միխայլովյան արհեստագործական ուսումնարանում (1896—1901 թթ.), իսկ 1901—1906 թթ. սովորել և հաջողությամբ ավարտել է Շուշու ռեալական ուսումնարանը:

Դարասկզբին Շուշում ծավալվել էր հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան, որի շարքերում աչքի էին ընկնում Բոգդան, Լյուդվիգ, Փառանձեմ (Փառո) Կնունյանցները, Ալեքսանդր Բեկզադյանը, Իվան Մելիք-Հովսեփյանը, Սիմոն Ավետիսյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Սահակ Տեր-Գաբրիելյանը, Բաղդասար Ավագյանը և ուրիշներ: Կապ հաստատելով լենինյան «Իսկրա»-ի հետ՝ Շուշու իսկրայականները պրոպագանդում էին մարքսիզմը, հետևողականորեն պայքարում բուրժուա-նացիոնալիստական դաշնակցություն կուսակցության, հայ բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների ու քաղաքական հոսանքների դեմ: Հայ մարքսիստների ավագ սերնդի ներկայացուցիչների օրինակով Վլադիսլավ Կասպարովը, ռեալականում սովորելու հետ մեկտեղ, ուսումնասիրում է մարքսիստական գրականությունը, ծանոթանում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի, Գ. Վ. Պլեխանովի աշխատություններին, մասնակցում աշակերտական խմբակներին, ընթերցում լենինյան «Իսկրա»-ն և նրա հրատարակությունները: Շուշու՝ հասարակական-քաղաքական իրադարձություններով հարուստ միջավայրում ձևավորվում է նրա հեղափոխական աշխարհայացքը: Կայուն իսկրայական Բոգդան Կնունյանցի ցանած մարքսիստական սերմերն առատ հունձք են տալիս Շուշում: Կասպարովը 1903 թ. մըտնում է ՌՍԴԲԿ շարքերը, դառնում աշակերտական սոցիալ-դեմոկրատական խմբակի ղորտակների անդամներից մեկը: «Վ. Ի. Լենինի աշխատությունները մեզ մատչելի դարձան մեր ուսանողության տարիներին,— գրել է հին բոլշևիկ Աշոտ Հովհաննիսյանը:— Հիշում եմ, սակայն, որ նրա երկերից մեկը տեսա դեռ դպրոցի նախավերջին դասարանում: Ես ու Կասպարովը նստում էինք վերջին նստարանին: Ռուսաց լեզվի դասի ժամանակ Սլավան ծնկի վրա թերթում էր ստվար մի հատոր: Դասատուն՝ Լեոնտևը, այդ նշմարեց և նկատողություն արեց նրան: Դա Լենինի **Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում** նշանավոր գիրքն էր, որը լույս էր տեսել «Վ. Իլյին» կեղծանունով: Սլավան ինձ ասաց, որ դա բոլշևիկների գլխավոր տեսաբանն է՝ Լենինը» (Աշ. Հովհաննիսյան, **Հուշեր և բնութագրումներ**, Երևան, 1969, էջ 79):

1906 թ. ամռանը Վ. Կասպարովը տեղափոխվում է Բաքու: Երկրամասի արդյունաբերական խոշոր կենտրոնի պրոլետարական ինտերնացիոնալ ընտանիքում, ռուսական առաջին հեղափոխության հորձանուտում քաղաքական մկրտություն է ստանում նա: Ստ. Շահումյանի, Պ. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Գ. Օրջոնիկիձեի, Ա. Ենուկիձեի, Ս. Սպանդարյանի և նշանավոր այլ բոլշևիկների հետ համատեղ նա ծավալում է բեղմնավոր գործունեություն: Շուտով Կասպարովն ընդգրկվում է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի կազմում, ուր մեծ եռանդ է ներդնում Սև քաղաքի, Բալախանիի, Բիբի-Հեյբաթի և երկաթուղու բանվորների շրջանում: Գտնվելով քաղաքական պայքարի առաջին գծում՝ նա բանվորներին առաջնորդում էր քաղաքական ցույցերի ու գործադուլների, աշխատակցում բոլշևիկյան մամուլին: Այդ ժամանակաշրջանում Կասպարովը ծանոթանում և համագործակցում է Ռ. Զեմլյաչկայի, Մ. Օլմինսկու, Յա. Լենցմանի հետ. մարդիկ, որոնց բոլշևիկյան կենտրոնը, Վ. Ի. Լենինի ցուցումով, Բաքու էր ուղարկել՝ զորավիգ լինելու բոլշևիկների պայքարին:

1907—1908 ուսումնական տարում Վ. Կասպարովը սովորում է Պետերբուրգի համալսարանում: Հեղափոխության օրրանում, քաղաքի բոլշևիկյան կոմիտեի կազմում նա աչքի ընկնող դեր է խաղում, ընդլայնում հեղափոխական կապերը, հարստացնում իր գիտելիքներն ու փորձը: Վերադառնալով Կովկաս՝ գլխովին մխրճվում է հեղափոխական պայքարի հորձանուտը: Ցարական գործակալները հետապնդում են Կասպարովին, հալածում, բանտ նետում: Բայց բոցաշունչ հեղափոխականը բնավ չի տատանվում, համարձակ շարունակում է գաղափարական-դասակարգային պայքարը:

Նա ակտիվ մասնակցել է ՌՍԴԲԿ VI—Պրագայի կոնֆերանսի նախապատրաստությանը, Ստ. Շահումյանի խմբագրությամբ լույս տեսած «Սովրեմեննայա ժիզն», «Վոլնա» և այլ թերթերի հրատարակությանը: 1911 թ. օգոստոսի 6-ին Բալախանիում նա մասնակցել է բոլշևիկների այն խորհրդակցությանը, որտեղ քննարկվել է Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ Փարիզից եկած Գ. Օրջոնիկիձեի զեկուցումը՝ արտասահմանում բոլշևիկների գործունեության և Համառուսական կոնֆերանսի նախապատրաստման մասին: Սեպտեմբերին Ստ. Շահումյանի, Ա. Ենուկիձեի և Բաքվի կոմիտեի այլ անդամների հետ մեկտեղ նա ձերբակալվում, նետվում է Բայիլովի բանտը: Բաքվի նահանգային ժանդարմական վարչությունն շտա-

պեց հաղորդել Պետերբուրգ, թե ձերբակալվածների մեջ է «ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության քաղաքային և երկաթուղային շրջանների պրոպագանդիստ Սլավան, որը հեղափոխականի իր տեսական ու գործնական բարձր հատկանիշներով լավ հայտնի է Պետերբուրգի ուսանողության հեղափոխական կազմակերպություններում»: Ժանդարմերիան միաժամանակ առաջարկում էր՝ Շահումյանին, Կասպարովին, Ենուկիձեին, Մելիքյանցին հինգ տարով աքսորել Ռուսաստանի հեռավոր նահանգներից մեկը (տե՛ս ՎՍՍՀ ԿՊՊԱ, ֆ. 94, ց. 1, գ. 563, թ. 85): 1912 թ. հունվարի 16-ին Բաքվի քաղաքագլուխը փոխարքայի գրասենյակին զեկուցում է Վ. Կասպարովի և նրա հետ ձերբակալված 15 քաղաքական բանտարկյալների մասին, խնդրելով երկարաձգել նրանց կալանքի ժամկետը՝ մինչև արտաքսումը: Ընդ որում նշված է, որ Կասպարովի ժամանակը լրանում է փետրվարի 1-ին: Կովկասի փոխարքան երկարաձգում է կալանքի ժամկետը: Փետրվարի վերջին Ա. Ենուկիձեին է հասնում Փարիզից Վ. Ի. Լենինի ուղարկած նամակը: Իլյիչը ջերմ ողջույններ է հղում Ենուկիձեին, ընդհանուր բարեկամներին, ցանկանում առողջություն, տոկունություն: Վ. Ի. Լենինի նամակը թևավորում է նավթաշխարհի պրոլետարիատի ղեկավարներին, կայտառություն հաղորդում: Արխիվային նյութերը պատմում են, որ այդ օրերին լեգենդար Կամոն, կուսակցության հանձնարարությամբ, մեկնել է Բաքու, բանտից Ստ. Շահումյանի փախուստը կազմակերպելու համար: Որոշ ժամանակ անց, 1912 թ. հուլիսին, Կովկասի փոխարքայի կարգադրությամբ Կասպարովն արտաքսվում է Կովկասի սահմաններից դուրս՝ Դոնի Ռոստով: Այստեղ, ոստիկանության խիստ հսկողության պայմաններում, նա կապեր է հաստատում տեղի բոլշևիկների, Դոնի կազմակերպության կոմիտեի քարտուղար Պ. Ջափարիձեի և այլոց հետ, դառնում Ռոստովի բոլշևիկների ճանաչված ղեկավարներից մեկը: Նրա ակտիվ մասնակցությամբ անհաշտ պայքար է ծավալվում մենշևիկ-լիկվիդատորների դեմ, հիմնադրվում է բոլշևիկյան «Կենտրոնական խումբը», բոլշևիկները սահմանազատվում են մենշևիկներից, պարզաբանվում է բոլշևիկների դումայական պլատֆորմը, կազմակերպվում Դումայում բոլշևիկ դեպուտատների ընտրության գործը:

Վ. Կասպարովը շատ բան արեց Դոնի Ռոստովի բոլշևիկյան կազմակերպության մարտունակության բարձրացման ասպարեզում:

3.

1913 թ. հունվարին, ընկերների օգնությամբ, Վ. Կասպարովը բռնում է վտարանդիության ուղին: Ուսումը շարունակելու բուռն ցանկությամբ նա ընդունվում է Բեռլինի բարձրագույն առևտրական դպրոցը, նետվում ուսանողական փոթորկալից կյանքի հորձանուտը: Վ. Կասպարովի հեղափոխական գործունեության համար վճռական նշանակություն են ունեցել հանդիպումները ու նամակագրությունը Վ. Ի. Լենինի հետ: Ստ. Շահումյանի և Ա. Ենուկիձեի օգնությամբ նա նամակագրական կապեր է հաստատում Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի հետ, դառնում Իլյիչի մերձավոր զինակիցներից մեկը, կուսակցական պատասխանատու հանձնարարություններ կատարում Բեռլինի, Բեռնի, Ժնևի, Ցյուրիխի, Դավոսի բոլշևիկների արտասահմանյան կազմակերպություններում: 1913 թ. հունիսի 10-ին Վ. Կասպարովի մասին Վ. Ի. Լենինը հարցնում է Ստ. Շահումյանին: Վերջինս պատասխանում է. «Այն բեռլինցին, որի մասին դուք հարցնում եք, մեր լավ բարեկամն է, կարող եք լիովին վստահել նրան»: Իր կյանքի վերջին չորս տարիները նա անց է կացրել Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հետ. ջերմ, բարեկամական են եղել նրանց հարաբերությունները:

Իլյիչը լիովին վստահում էր Կասպարովին, նրա միջոցով ստանում Ռուսաստանից իրեն ուղարկված նամակները, Ռուսաստանի բոլշևիկյան տեղական կոմիտեներին առաքում մարքսիստական գրականություն և այլ նյութեր: Նա վստահելի կամուրջ է դառնում Վ. Ի. Լենինի և արտասահմանի, ինչպես և Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպությունների, Կովկասի լենինյանների ու քաղաքական աքսորականների միջև: Կասպարովը Իլյիչին տեղեկություններ է հաղորդում Ռուսաստանի քաղաքական կյանքի, Պոլտավայի և Անդրկովկասի կուսակցական կոմիտեների գործունեության մասին, առաքում է «Պրավդա» և այլ թերթեր: Բոլշևիկներից շատերը ընդհատակում էին, վտարանդի, իսկ նրանց մարքս-լենինյան գաղափարները, հաղթահարելով բոլոր արգելքները, թափանցում էին ժողովրդի սիրտը: Ժողովրդական մասսաները՝ պատմության իսկական կերտողները, հավատում էին բոլշևիկներին, նրանց առաջնորդ Լենինին, ընթանում հեղափոխական ճանապարհով:

Լենինը սովորեցնում էր, որ հեղափոխական կազմակերպությունն ուժեղ է իր բազում կապերով: Նման կապեր հաստատողներից էր պրոֆեսիոնալ հեղափոխական Կասպարովը. նա հմտորեն կատարում էր կուսակցական հանձնարարությունները, ակտիվ մասնակցում քաղաքական պայքարին: Արժեքավոր է Վ. Ի. Լենինի և Վ. Կասպարովի նամականին: Լենինը ղեկավար ցուցումներ ու հանձնարարու-



թյուններ պարունակող մի շարք նամակներ է գրել Վ. Կասպարովին՝ 1913, 1914, 1915 և 1917 թվականներին: Լենինի հանձնարարությամբ նրան շատ նամակներ է գրել և Ն. Կրուպսկայան:

— 1913 թ. հունիսի 13-ի նամակում Իլյիչը Կասպարովից խնդրում է ուղարկել «Պրավդա»-ի № 119-ը, որտեղ «Վ.» ստորագրությամբ՝ (Վիտիմսկի) հրապարակված է Մ. Օլմինսկու **Կասկածելի վրիպում** խորագրով հոդվածը:

— Հունիսի 14-ի նամակում խորհուրդ է տալիս նրան մշակել ազգային հարցի մասին գրած հոդվածը: «Իմ կարծիքով, վերցված է լավ թեմա և մշակված է ճիշտ, բայց գրական տեսակետից բավականաչափ հղկված չէ: Չափազանց շատ է, այդ, ինչպես ասեմ «ագիտացիան», որը հարմար չէ **տեսական** հարցի շուրջ գրած հոդվածին: Կամ դուք ինքներդ, ըստ իս, պետք է վերամշակեք, կամ մենք կփորձենք» (**Լենինի հետ,** ժողովածու, էջ 23): Դա այն ժամանակ էր, ինչպես ճիշտ նկատել է Ն. Կրուպսկայան, երբ Իլյիչի ուշադրությունը գամված էր ազգային հարցին, նա ձգտում էր ավելի սերտորեն կապվել Ստ. Շահումյանի և բոլոր նրանց հետ, ովքեր հետաքրքրվում էին դրանով և ճիշտ մոտեցում հանդես բերում:

Կասպարովն աշխատակցում է մարքսիստական «Պրոսվեշչենիե» ամսագրին, գրում ազգային հարցի մասին, հոդվածներ է տալիս «Պրավդա»-ին: Նրա գրչին են պատկանում «Պրավդա»-ի 1913 թ. մարտի 8-ի **Փոքրիկ տեղեկանք** (նամակ խմբագրությանը), և մարտի 27-ի՝ **Ճապոնական կադետները** և այլ հոդվածներ: Սակայն Միրոն Չեռնոմազովը (Լյուտիկով, Խախմովիչ), որ Բաքվից գիտեր Սլավային և, ինչպես հետագայում պարզվեց, պահնորդական բաժանմունքի գաղտնի գործակալ էր, արգելակում էր նրա հոդվածների հրապարակումը «Պրավդա»-ում: Այդ առթիվ 1913 թ. հուլիսի 19-ին Աստրախան՝ Ստ. Շահումյանին ուղարկած նամակում Կասպարովը գրել է. «Թանկագին Ստեփան... սկզբում,— երբ ես դեռ չգիտեի, թե ով է նստած խմբագրությունում (խոսքը «Պրավդա»-ի մասին է.— **Խ. Բ.**), իմ մերժված հոդվածների առթիվ մի տեսակ «փքված» վիճակում էի: Մտածում էի. «Ուրեմն, Սլավկա, դու դեռ չես հասունացել, մի քիչ էլ պիտի սովորես»: Բայց երբ իմացա այդ համբավավոր մարդկանց մասին, հանգստացա, քանի որ..., եթե նրանք մերժում են իմ հոդվածները, նշանակում է, բանն այնքան էլ վատ չէ...»: Այնուհետև Կասպարովը Շահումյանին պատմում է՝ թեև «Պրավդա»-ում դադրել եմ, բայց մի ուրիշ տեղ բախտս բերեց: Ես հոդված գրեցի «Պրոսվեշչենիեի» համար և խնդրեցի Վոլոդյային (Վ. Ի. Լենին) նայել: Նա մեծ սիրով համաձայնեց: Կարդալով հոդվածս, նա այն հավանել է» (ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4007, ց. 2, գ. 65):

Ցավոք, տակավին չի գտնված Կասպարովի՝ ազգային հարցի մասին գրած հոդվածը, բայց փաստն ուշագրավ է: Քանի որ խոսք բացվեց «Պրավդա»-ում Շահումյանի աշխատելու մասին, նշենք. 1913 թ. մարտ—ապրիլ ամիսներին Ստ. Շահումյանը Աստրախանի աքսորավայրից, Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ, մեկնել է Պետերբուրգ. գործուն մասնակցություն ցուցաբերել «Պրավդա»-ի խմբագրական աշխատանքներին, բայց ցարական պահնորդական բաժանմունքի հետապնդումների և «Պրավդա»-ի այն ժամանակվա խմբագրական կոլեգիայի անդամների (հատկապես Միրոն Չեռնոմազովի) հետ ունեցած անհամաձայնության պատճառով նորից վերադարձել է Աստրախան: Հունիսին Լենինին գրած նամակում Շահումյանը նշել է. «Ի միջի այլոց, ինչպես պարզվեց իմ այստեղ վերադառնալուց հետո, ոստիկանական պայմանների պատճառով ես հազիվ թե կարողանայի մնալ Պետրոգրադում»: Փետրվարի վերջերին Ա. Ենուկիձեն Շահումյանին ուղարկած նամակում գրել է. «Կ-ն (Կասպարովը.— **Խ. Բ.**) հաղորդել է ինձ Իլյիչի հետևյալ խոսքերը, թե միշտ էլ գիծը հասկացող են եղել բաքվեցիները. ես միշտ էլ կարող եմ վստահել նրանց»: Ապրիլի 4-ի նամակում Վ. Կասպարովը Շահումյանին հաղորդում է «Պրավդա»-ի խմբագրությունում տիրող իրադրության մասին, դատապարտում Միրոն Չեռնոմազովի վարքագիծը: «Երբ իմանում ես Մայեր Խախմովիչի (Չեռնոմազովի) հաղթանակի մասին,— ասում է Կասպարովը, — կատաղում ու գազազում ես: Իրավացի է Աբելը գրում, սարսափում ես, երբ մտածում ես, թե ում ձեռքում է թերթը»: Նոյեմբերի 13-ին Շահումյանին գրած նամակում, կրկին անդրադառնալով «Պրավդա»-ի հետ կապված պատմությանը, Ենուկիձեն ասում է. «Խիստ զգացվում է քո բացակայությունը: «Պրավդան», ինչպես ինքդ ես տեսնում, իրեն վատ, անզուսպ է պահում և այլն: Ի՞նչ կլիներ, եթե թերթը քո ձեռքում լիներ»:

«Պրավդա»-ի պատմությանը նվիրված աշխատություններում շրջանցվող այս դրվագը կարևոր նշանակություն ունի տվյալ շրջանի քաղաքական դրությունը ճիշտ հասկանալու, Կրակովից և Պորոնինից Վ. Ի. Լենինի՝ «Պրավդա»-ին ուղարկած նյութերը կրճատելու, ձըգձըգելու պատճառները պարզաբանելու, «Պրավ-

դա»-ի պատմությունը գիտականորեն լուսաբանելու համար:

Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի, Ա. Ենուկիձեի, Վ. Կասպարովին գրած Շահումյանի նամակները լույս են սփռում շատ հարցերի, այդ թվում և 1913 թ. նրա՝ «Պրավդա»-ում կարճատև աշխատելու և նորից Աստրախան վերադառնալու պատմության վրա: Վ. Ի. Լենինը 1914 թ. հունվարի 6-ի նամակում Կասպարովին հայտնում է. «Գուցե օրերս Բեռլինով անցնելիս մի երկու ժամ մնամ քաղաքում (ըստ երևույթին Փարիզ ուղևորվելիս.— **Խ. Բ.**): Նցանկանայի տեսնվել: Պատասխանեք, ազա՞տ եք առավոտյան 11-ից մինչև 1-ը և այլ ժամանակ... Աշխատեցեք լինել կայարանում, «Պրավդա»-ն ձեռքներիդ» (**Լենինի հետ,** էջ 42): Եվ այսպես... նոր նամակներ, նորանոր հանձնարարություններ:

4.

Վլադիսլավ Կասպարովն արտասահմանում ակտիվ մասնակցել է ռուսաստանցի ուսանողության հեղափոխական շարժումներին, նրանց շրջանում տարածել բոլշևիկյան գաղափարները:

Համաշխարհային առաջին պատերազմն ընկըրվելուց հետո, սեպտեմբերին, Վ. Կասպարովը տեղափոխվում է Շվեյցարիա՝ Բեռն, որտեղ անձամբ հանդիպում է Լենինին, մասնակցում բոլշևիկների Բեռնի կոնֆերանսին, հանդես գալիս և պաշտպանում պատերազմի վերաբերյալ լենինյան պլատֆորմը, որն արտացոլված է բոլշևիկյան Կենտկոմի «Պատերազմը և Ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատիան» մանիֆեստում: «Երբ սկսվեց պատերազմը, Կասպարովը Գերմանիայից տեղափոխվեց Բեռն,— գրել է Կրուպսկայան,— հանդիպեցինք բարեկամների պես: Բեռնում տեսնվում էինք ամեն օր, և շուտով Կասպարովը մեր խմբում դարձավ ամենամոտ ընկերներից մեկը»: Բեռնի կոնֆերանսը, որին մասնակցում էին Փարիզի, Լոնդոնի, Ցյուրիխի, Լոզանի, Ժնևի և այլ քաղաքների բոլշևիկյան սեկցիաների ներկայացուցիչները, ընտրեց բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության կոմիտեի նոր կազմ, որոնց մեջ էր և Վ. Կասպարովը:

Պատերազմի տարիներին Վ. Կասպարովը հետևողականորեն պաշտպանել է բոլշևիկների տակտիկան ու քաղաքական լոզունգները: Նա շատ բան է արել իբրև բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության կոմիտեի և նրա առաքող հանձնաժողովի անդամ: Ցիմերվալդյան կոնֆերանսի նախօրյակին Կասպարովը հանձնարարություն է ստանում օգնել՝ շտապ թարգմանելու Վ. Ի. Լենինի **Սոցիալիզմը և պատերազմը** աշխատությունը, որի հավելվածում զետեղված էին Կենտկոմի մանիֆեստը պատերազմի մասին, Բեռնի կոնֆերանսի բանաձևերը և կուսակցական աշխատողների հետ ՌՍԴԲԿ Կենտկոմի Պորոնինի խորհրդակցության բանաձևը ազգային հարցի վերաբերյալ: Հաջողությամբ իրականացնելով լենինյան ծրագրային աշխատության գերմաներեն հրատարակությունը, առաքող հանձնաժողովը տարածում է **Սոցիալիզմը և պատերազմը** գիրքը, 500 օրինակ ուղարկում ԱՄՆ՝ Ա. Ս. Կոլոնտային:

5.

Ոստիկանական հալածանքները ու բանտերը, աքսորն ու վտարանդի հեղափոխականի կյանքը քայքայեցին Կասպարովի առողջությունը: Բայց կուսակցության աներեր զինվորը լավատեսությամբ տոգորված, հաղթահարում էր ցավը, հայրենիքի կարոտը սրտում սպասում պայծառ լուսաբացին: Նա ապրում և այրվում էր հեղափոխական գործերով, աշխատում ինքնամոռացության աստիճան, թաքցնելով հիվանդությունն ու ծանր ցավը: Լենինը, անհանգստացած, խորհուրդ է տալիս անհապաղ մեկնել առողջարան, բուժվել. նյութական օգնություն է կազմակերպում, խորհուրդներ տալիս:

Երբ խորտակվեց Ռոմանովների երեքհարյուրամյա գահը, Ռուսաստանի դռները բացվեցին քաղաքական վտարանդիների առաջ: Լենինը նկատի ունենալով, որ Վ. Կասպարովը վատառողջության պատճառով մնում է արտասահմանում, շտապում է նամակով հուսադրել նրան և իրեն հատուկ ջերմությամբ հաջողություններ մաղթել: «Թանկագին Կասպարով,— գրում է Իլյիչը,— ամուր, ամուր սեղմում եմ Ձեր ձեռքը, ցանկանում եմ առողջություն: Հարկավոր է դիմանալ: Հույս եմ կհանդիպենք Պիտերում և այն էլ շուտով» (**Լենինի հետ,** էջ 72):

Վ. Կասպարովին բախտ չվիճակվեց այլևս տեսնել Իլյիչին: 1917 թ. սեպտեմբերի 6-ին, Դավոս քաղաքում, վախճանվեց Կասպարովը՝ բարի հիշատակ թողնելով ժամանակակիցների, բոլշևիկների ու երախտագետ սերունդների սրտերում:

Նա ընդամենը 33 տարեկան էր: Այդքա՜ն երիտասարդ և այնքա՜ն շատ գործ էր արել հեղափոխության համար: Որքա՜ն վառ երազանքներ, որքա՜ն անկատար մտահղացումներ...

# ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԵՎՄՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԹԵՄԱՆ*

**Գ. Խ. ՍՏԵՓԱՆՅԱՆ**
*ՀՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ*

*Խոսել ռեալիզմի շրջանի արևմտահայ գրականության մեջ սոցիալական թեմայի մասին, նշանակում է խոսել ամբողջ այդ գրականության մասին, քանի որ սոցիալական հարցն առանցքային է այդ շրջանի գրական բոլոր ներկայացուցիչների մոտ, և դա միանգամայն հասկանալի էր:*

*Մեր նպատակն է ցույց տալ, թե արևմտահայ ռեալիզմի առաջացումը հասարակական-քաղաքական ի՛նչ տեղաշարժերի արդյունք էր, իրական կյանքի ո՛ր կողմերը գրավեցին հայ գրողների ուշադրությունը, թեմատիկ ի՛նչ նորություններ բերեցին դրանք հայ գրականության մեջ, և սոցիալական հարցի արծարծումը զարգացման ինչպիսի՛ վերընթաց ապրեց՝ կրավորական արձանագրումից հասնելով մինչև դասակարգային պայքարի գաղափարին— արդյունք 1905 թվականի ռուսական հեղափոխության ազդեցության:*

***

*Որքան բարձր էր արևմտահայերի մոտ 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմի նախօրյակի, այդ շրջանի քաղաքական ռոմանտիզմի ալիքը, նույնքան մեծ էր հետպատերազմյան տարիների տեղատվության ուժգնությունը, ճնշումների, հալածանքների կորագիծը:*

*Համիդյան կառավարությունը լայն ճակատով անցել էր հարձակման պատերազմի տարիներին իր քաղաքական ծրագրերը, ռուսական կողմնորոշումը դրսևորած հայ ժողովրդի, հատկապես մայրաքաղաքի հայ մտավորական խավերի դեմ, քանի որ հասարակական-քաղաքական կյանքի խթանն այդ խավերի ձեռքին էր:*

*Պատերազմի ավարտից անմիջապես հետո սկսվում են ձերբակալություններն ու ճնշումները Կ. Պոլսում: Խմբագիր Տ. Չիվելեկյանը ձերբակալվում է այն պատճառով, որ իր թերթում գրել էր, թե հայերը պետք է հետևեն բուլղարների օրինակին՝ իրենց ազատությունը ձեռք բերելու հարցում: Երաժիշտ Ե. Տնտեսյանը բանտարկվում է իր հրատարակած երգարաններում ազգային երգեր զետեղած լինելու մեղադրանքով: «Մամուլ» թերթի խմբագիր Գ. Այվազյանը ձերբակալվում է գավառից ստացված ազատասիրական մի բանաստեղծություն տպագրած լինելու համար, և այսպես անվերջ:*

*Մամուլում պաշտոնապես արգելվում է ազգային զգացումներ շոշափող ամեն մի արտահայտություն՝ պատմական անցյալին վերաբերող անուններ, ազատասիրական բառեր և այլն:*

* *Նույն հեղինակի՝* Ռոմանտիզմի շրջանի արևմտահայ գրականության սոցիալական թեման *հոդվածը տե՛ս մեր ամսագրի 1973 թ. 11-րդ համարում:* Խմբ.:

Հ. Պարոնյանը Մոսկվայի «Փարոս Հայաստանի» պարբերականում տպագրած մի թղթակցությունում գրում էր. «Վարդան զորավարն ու Գավաֆյան գրավաճառ բանտարկվեցան. Վարդան զորավարը ծախվելու հանցանքի համար, և Գավաֆյանը՝ զայն ծախելու համար...» (Երկեր, հատ. 4, էջ 490)։

Արգելվում է հայ ժողովրդի պատմության, պատմական աշխարհագրության դասավանդումը հայկական դպրոցներում։ Փակվում են հայկական թատրոնները։ Բոլոր ականավոր դերասան-դերասանուհիները, այդ թվում Պ. Ադամյանը, Սիրանույշը, Ազնիվ Հրաչյան, Մարտիրոս Մնակյանը և ուրիշներ անցնում են Կովկաս, խաղում Թիֆլիսի հայկական թատրոնում։ Խստագույն գրաքննություն է սահմանվում հայկական բոլոր հրատարակությունների վրա։ Արգելվում են համախմբումները, ժողովները, անգամ ընտանեկան հավաքույթներն առնվում են հսկողության տակ։ Ամենուր վխտում են լրտեսները։ «Երկաթե ձեռք մը կը ծանրանա Պոլսո մամուլին վրա»,— գրում էր «Մշակ» թերթի թղթակիցը 1881 թ. հունվար ամսին։

Քաղաքական այսպիսի մթնոլորտում ազգային ռոմանտիզմն արագ տեղի պիտի տար առավել խոհեմ քաղաքականության։ Միաժամանակ գրականության միջից իսպառ պիտի վերացվեր հայրենասիրական թեման, որ մի քանի տարի առաջ հիմնականն էր բոլոր գրողների համար։ Նրանք այժմ կարող էին շոշափել անվնաս նյութեր, առաջին հերթին՝ կենցաղային հարցեր։

Բայց միակողմանի կլիներ արևմտահայ ռեալիզմի զարգացումը պայմանավորել միայն քաղաքական իրադարձություններով։ Նվազ դեր չկատարեց տնտեսական փլուզումը։ Թուրքիան պատերազմից դուրս էր եկել տնտեսապես թուլացած ու քայքայված, ընկել վիթխարի պարտքերի տակ։ Դատարկ էր դանձարկղը։ Ամենուր տիրում էր անգործություն ու աղքատություն։ Տասնյակ հազարավոր երիտասարդներ թափառում էին փողոցներում անհույս ու անհեռանկար, որոնում ապրուստի միջոցներ։ Ամենուր անգործ մտավորականներ էին՝ ուսուցիչներ, տպարանատերեր, բանաստեղծներ, որոնք ընդամենը մի քանի տարի առաջ դեմքեր էին հասարակական կյանքում, այժմ դարձել էին «մեծապատիվ մուրացկաններ»։

Շատերը, չկարողանալով տոկալ տնտեսական ու քաղաքական նոր պայմաններին, վերջ էին տալիս իրենց կյանքին։ Ժամանակի հայ մամուլը ողողված է անձնասպանությունների լուրերով։ «Մշակի» թղթակիցը գրում էր. «Տասնութ տարեկան պատանի մ՚էր, որ մի քանի ամիս առաջ կերթար կը գրկեր երկաթուղու անիվները։ Անգործ էր» («Մշակ», 1883, № 38)։

Անձնասպանություն էին փորձել մի քանի հայ մտավորականներ, այդ թվում դերասանուհի Սիրանույշը, գրող Ե. Տեմիրճիպաշյանը, որը հետագայում իրագործեց մտադրությունը։

Հայ մտավորականությանը համակող ընդհանուր հուսալքումը և կառավարության կողմից սահմանված խստագույն գրաքննությունը գրական հրապարակը ողողել էին անկումային տրամադրություններ արտահայտող գրքերով, հատկապես ֆրանսերենից կատարված այնպիսի թարգմանություններով, որոնք փորձում էին ընթերցողներին կտրել իրական կյանքից, տեղափոխել թագավորների, մարկիզների, ասպետների՝ երևակայություն գրգռող աշխարհը։

Որոշ գրողներ, մտավորականներ իրենց ստեղծագործություններում տուրք էին տալիս կրոնական գաղափարախոսությանը, պաշտպանում վնասակար այն տեսակետը, թե գեղարվեստական գրականության կոչումն է մարդկային տառապանքների սփոփումը և ոչ այդ տառապանքների վերացման միջոցների որոնումը։

Այսպես, Գր. Օտյանը, որ քաղաքական վտարանդի էր և ապրում էր Փարիզում, այնտեղից ուղարկած իր թղթակցություններում պարզապես գրում էր. «Հավատացյալը կը խոնարհի, անհնազանդը կկռվի, և հավատացյալը, որ աստուծո, արքայության կը հավատա, կը հանդարտի ու կմխիթարվի»։

Նախորդ երկու տասնամյակներում, այսինքն՝ զարթոնքի շրջանում դարավոր քնից արթնացած, իր քաղաքական ազատության համար ծրագրեր կազմող հայ մտավորականությունն այժմ տեղի էր տալիս, հարմարվում օրվա կարգախոսին, որքան էլ ծանր լիներ այն։



Ահա այս պայմաններում է, որ հանդես եկան մի խումբ երիտասարդներ Ա. Արփիարյանի գլխավորությամբ և սկիզբ դրին գրական, հրապարակախոսական հուժկու մի շարժման, որն իր հիմքում քաղաքական էր, ուղղված ժամանակի անկումայնության և ընդհանուր հուսալքման դեմ, միաժամանակ ուներ խորապես սոցիալական բովանդակություն։

Այդ երիտասարդները 1884 թ. հիմնում են «Արևելք» օրաթերթը և «Մասիս» գրական հանդեսը և լայն ճակատով սկսում ծրագրված պայքար հետադեմ տարրերի, պահպանողական խավերի դեմ, փորձելով քաղաքական նոր պայմաններում վառ պահել ապագայի հույսը, մարդկանց ներշնչել տոկունություն, արիություն։

Նրանց նպատակներից մեկն էր սահմանազատվել գրական հին ուղղություններից՝ ռոմանտիզմից ու կլասիցիզմից, զարկ տալ իրական կյանքն արտացոլող գրականության, առանցքային հարց դարձնելով սոցիալական անհավասարությունից բխող չարիքը։

Նրանք իրենց հախուռն ժխտման մեջ մասամբ անտեսեցին նախորդ տասնամյակների արժեքները, նույնիսկ գրական այնպիսի մի հսկայի, ինչպիսին էր մեծ երգիծաբան Հ. Պարոնյանը, որին պատկանում է արևմտահայ ռեալիստական արձակի սկզբնավորման պատիվը, սակայն, դրանով հանդերձ, սկըսված մտավոր շարժումը, իր ամբողջության մեջ, միանգամայն առաջադիմական էր։

Պատասխանելով Գր. Օտյանի այն տեսակետին, թե գրականության կոչումն է մխիթարել հուսալքվածներին, Արփիարյանը գրում էր. «Մխիթարությունը վերջին ապավենն է անոնց, որոնք իրենց ցավերուն այլևս դարման չեն կրնար հուսալ, իսկ արդի վիպասանությունը չուզեր վշտերու սփոփանք հայթայթելով միայն շատանալ, այլ նաև՝ կետ նպատակն է աջակցել անոնց, որ ընկերական թշվառությանց դարմաններ որոնելու հետամուտ են։ Վեպը իրական կյանքի պատկերը կպարզե և մեզի կմղե ընկերական վիճակին վրա խորհրդածելու» («Արևելք», 1885, մարտի 7)։

Մեծ կարևորություն տալով նաև գրական ազդեցության հարցին՝ Արփիարյանը միանգամայն առաջադիմական տեսակետից է մոտեցել դրան։ Ամենևին չժխտելով արևմտաեվրոպական դասական գրականության (Հյուգո, Դոդե, Բալզակ, Զոլա և ուրիշներ) բարերար ազդեցությունը (մի բան, որ միշտ էլ ուղեկցել է արևմտահայ մտավոր կյանքին), նա գտնում էր, որ արևմտահայ գրողները պետք է ուղեցույց ունենան նաև ռուսական առաջավոր գրականությունը և այդ գրականության ազդեցությամբ զարգացող արևելահայ գրականությունը, առաջին հերթին՝ Խ. Աբովյանի, Գ. Սունդուկյանի և այլոց ստեղծագործությունները։

Արփիարյանը միանգամայն ճիշտ էր համարում ֆրանսիական ակադեմիայի անդամ Վոգյուեի այն կարծիքը, թե այլևս երիտասարդությունը հոգեկան սնունդ չի կարող գտնել ժամանակակից ֆրանսիական գրականության մեջ, որտեղ տիրապետողը տեղական գույնն է, անօրինակ դեպքերի ախորժը, մինչդեռ, ասել է Վոգյուեն, «Ռուսական գրականության մեջ կը փչե կյանքի շունչը, որ այնքա՜ն հրապուրիչ կընծայե ռուսական մատենագրությունը ընկերական ամեն աստիճանի ուսումնասեր երիտասարդության» («Մասիս», 1889, թիվ 3924)։

Բարձր գնահատելով ռուս դասականներին՝ Պուշկինին, Լերմոնտովին, Տուրգենևին, Տոլստոյին, տպագրելով հոդվածներ նրանց մասին կամ թարգմանություններ նրանց երկերից, Արփիարյանը մատնանշում էր հատկապես այն գրողներին, որոնք իրենց ստեղծագործություններում պատկերում էին աշխատավոր խավերի վիճակը, մտքեր հուզում։ Նա գրում էր. «Ռուսական նոր գրականության մեջ, ամբողջ սերունդ մը կուսումնասիրե ժողովուրդը և նորավեպերու ու վեպերու մեջ կնկարե անոր թշվառություններն ու տառապանքները։ Պետք է հիշել մանավորապես Գլեբ Ուսպենսկիի գործերն և մանավանդ իրեն գլխավոր գործը՝ «Հողին զորությունը», որ գյուղացիներու ներքին կյանքին գերագույն արտահայտությունն է» («Հայրենիք», 1894, թիվ 731)։

Նույն այս չափանիշով է գնահատել նա արևելահայ գրականությունը, գրելով. «Կարեկցություն թշվառներու տառապանքի, դարման անոնց ցավերու, այս է ոգին Արարատյան արդի մեր գրականության» («Մասիս», 1889, թիվ 3924)։

Արփիարյանն առաջարկում էր, որ արևմտահայ գրականությունն էլ ընթանա այս շավղով, հետաքրքրության առանցք դարձնելով աշխատավոր խավերի կյանքը։

Մեր նպատակից դուրս է մանրամասն ներկայացնել, թե գրական այս շարժման մասնակիցներից յուրաքանչյուրը որքանով կատարեց Արփիարյանի վերոհիշյալ առաջարկները, ինչպիսի՛ լայն հետաքրքրասիրություն առաջացավ ռուսական գրականության հանդեպ, որից որոշ նմուշներ նախ թարգմանվել են արևմտահայերեն, ապա միայն՝ արևելահայերեն։

Գրականությունը դեպի կյանք տանելու կոչին առաջինը պատասխանողներից եղավ ինքը՝ Ա. Արփիարյանը, գրելով Կյանքի պատկերներ շարքի առաջին պատմվածքները։ Հետաքրքրական փաստ է, որ նա առանձին գրքով հրատարակելով Ապուշը վիպակը, այն նվիրել է Գ. Սունդուկյանին, խոստովանելով, թե նրա պիեսներն են ազդել իր «մտքի ուղղության վրա»։

Արփիարյանից հետո հրապարակ իջան Գր. Զոհրապը, Տ. Կամսարականը, Լ. Բաշալյանը, Մելքոն Կյուրճյանը, Ե. Օտյանը, Ա. Չոպանյանը, Երուխանը, այլ խոսքով՝ այն բոլոր գրողները, որոնց անվան հետ է կապվում արևմտահայ գրական ռեալիզմի զարգացումը։

Նրանք համարձակ դեն նետեցին ռոմանտիզմի վարագույրը, որը թանձր մշուշով փակել էր իրական կյանքը և ցույց տվին այդ կյանքի ներքին էությունն իր ողջ մերկությամբ, լայն կտավի վրա ցուցադրեցին հայ մեծահարուստների հակաժողովրդական գործունեությունը, զզվանք հարուցելով այն խավի նկատմամբ, որն ամեն կերպ ձգտել էր հարգանք ու հնազանդություն պարտադրել։

Այդ կյանքն էր ցուցադրվում Տ. Կամսարականի Վարժապետին աղջիկը, Երուխանի Ամիրային աղջիկը, Ե. Օտյանի՝ հետագայում գրած Ընտանիք, պատիվ, բարոյական և այլ վեպերում, ինչպես և Ա. Արփիարյանի Կատակ մը, Երազի մը գինը, Գր. Զոհրապի Փոստալը, Թեֆարիկ և տասնյակ այլ պատմվածքներում ու նովելներում։ Սոցիալական խոր բովանդակություն ունի Զոհրապի Ճիտին պարտքը սքանչելի նովելը, որը գրական ընտիր մի գոհար է։

Անշուշտ, տարբեր արժեք ունեին վերոհիշյալ ստեղծագործությունները. սակայն այստեղ մեզ զբաղեցնողը գրական այդ շարժման ընդհանուր միտումն է, մղումը դեպի աշխատավոր ժողովուրդը, նրա ներքին ողբերգության ցուցադրման ձգտումը, իսկ դա ընդհանուր էր վերոհիշյալ բոլոր գրողների մոտ։

Ա. Չոպանյանը 1892 թ. լույս ընծայած Արշալույսի ձայներ ժողովածուով միացավ գրական նոր շարժմանը և ողջունվեց թե՛ արևմտահայ և թե՛ արևելահայ առաջավոր գրողների կողմից։ Բանաստեղծ Հ. Հովհաննիսյանը, խոսելով այդ ժողովածուի մասին, գրել է. «ամենայն ինչ այստեղ ինձ համար մարդկային է ու իմ սրտի մոտ ու հասկանալի», իսկ Չոպանյանի՝ այդ օրերին բեմադրված Մութ խավեր ռեալիստական պիեսը գնահատվեց ամենից առաջ այն բանի համար, որ այնտեղ ցուցադրված էր «օրվան հացին դժնդակ պայքարը»։

Սոցիալական թեման նկատելի չափով զբաղեցրել է նաև Լ. Բաշալյանին. աղքատ, ընչազուրկ խավի կյանքն է պատկերել նա իր մի շարք պատմվածքներում— Պայրխնը Գևորգ, Զարբոնէ, Սյուզենի վարպետը, Կաղանդչէք, Անձել, մանավանդ՝ Նոր զգեստը նովելում։

Այսպիսով, աստիճանաբար գրականության կենտրոնական հերոս է դառնում մինչ այդ անտեսված, արհամարհված աշխատավոր մարդը՝ ձկնորսներ, պանդուխտներ, բեռնակիրներ, ջրկիրներ, լվացարարներ, սևագործ բանվորներ, լքված որբեր։ Այդպիսին էր, օրինակ, Երուխանի պատկերած աշխարհը։ Նա իր գեղեցիկ նովելներում տվել է մասնավորապես ձկնորսների օրհասական պայքարը մի կողմից՝ բնության տարերքի դեմ, մի կտոր չոր հացի համար, մյուս կողմից՝ իրենց շահագործող մարդկանց դեմ (Գողը, Պզտիկ Սեփին պատմությունը, Մեռելներուն ջրկիրը, Հյուծախտավորը և այլն)



Մի այլ աշխարհ է պատկերել Հրանդը (Մելքոն Կյուրճյան) իր Պանդուխտին կյանքէն ակնարկաշարով։ Կ. Պոլսում ապրում էին մոտ 40 հազար հայ պանդուխտներ, բոլորն էլ արևմտյան գավառական տարբեր կենտրոններից եկած. նրանք հայրենիքում թողել էին իրենց հարազատներին՝ ծնողներին, նորահարսներին ու երեխաներին, որպեսզի ֆիզիկական ծանր աշխատանքով մի քանի գրոշ վաստակեն... Ապրում էին մայրաքաղաքում ամենածանր պայմաններում, կեղեքվում առաջին հերթին տեղացի հայ հարուստներից, որոնք նրանց նայում էին որպես անբան անասունների, համարում ստորին խավի մարդիկ։ Հ. Պարոնյանն առաջինն էր նրանց մասին խոսել ջերմ տողերով, մարդկային ամենավեհ հատկանիշները նկատել գավառացի այդ միամիտ ու ազնիվ էակների մոտ։

Հրանդն այս խավի կյանքն էր ցուցադրում ամենայն մանրամասնությամբ, ցնցող տեսարաններով, մտնելով նրանց նեղ, անհրապույր կացարանները, երևան հանելով թշվառության այնպիսի պատկերներ, որոնց նմանը դժվար էր ցույց տալ համաշխարհային գրականության մեջ։ Նա նույնպես, ինչպես Պարոնյանը, ֆիզիկական այդ աշխատողների մեջ տեսնում էր մարդկային բարձր հատկանիշներ՝ բարություն, ազնվություն, հոգեկան հարստություն։ Նկարագրելով այս ամենը՝ նա կիզող ատելություն էր հարուցում այն խավի նկատմամբ, որոնց զոհերն էին այդ միամիտ մարդիկ։

***

1895—1896 թթ. քաղաքական դեպքերը միաժամանակ կասեցրին ռեալիստական այս առողջ գրականության զարգացումը Կ. Պոլսում, այն տեղափոխեցին արտասահման։ Ականավոր բոլոր գրողները՝ Ա. Արփիարյանը, Տ. Կամսարականը, Լ. Բաշալյանը, Ե. Օտյանը, Երուխանը, Ա. Չոպանյանը և ուրիշներ տարագրության մեջ շարունակեցին Պոլսում սկսված գրական շարժումը։ Դա նույն գրականությունն էր՝ թեմատիկ նկատելի փոփոխությամբ, արդյունք նոր միջավայրի, նոր ազդեցությունների։ Եգիպտոսում, Ֆրանսիայում, Անգլիայում, Բալկանյան երկրներում հիմնադրվեցին հայերեն նոր պարբերականներ, որոնց շուրջ համախմբվեցին վերոհիշյալ գրողները։ Փարիզում Ա. Չոպանյանը հիմնեց «Անահիտ» հանդեսը, Կահիրեում՝ Ա. Արփիարյանը և Վ. Թեքեյանը՝ «Շիրակը», Լոնդոնում Ա. Արփիարյանն ու Լ. Բաշալյանը խմբագրում էին «Նոր կյանքը» և այլն։

Ասպարեզ եկան նոր անուններ— Դանիել Վարուժան, Սիամանթո, Զ. Եսայան, Միք. Կյուրճյան, Ռ. Սևակ և ուրիշներ, որոնք նույնպես ապրում կամ սովորում էին արտասահմանում։

Սրանց ստեղծած գրականությունն աչքի էր ընկնում գրաքննական կաշկանդումներից համեմատաբար ազատ գործելու հնարավորությամբ, բայց և կենտրոնաձիգ մի ուժի բացակայության անպատեհությամբ, որը հնարավոր էր դարձնում մոլախոտի, այսինքն՝ գրական արժեզուրկ երկերի առատությունը։ Հիմնական կորիզը, սակայն, 1880-ական թվականների սերնդի հունձքն էր, որտեղ սոցիալական թեման մնաց առանցքայինը։

Նոր ասպարեզ իջնող որոշ գրողներ, ինչպես Դանիել Վարուժանն ու Ռ. Սևակը, Եվրոպայում բռնկած բանվորական շարժումների և ռուսական առաջին հեղափոխության նկատելի ազդեցությամբ սոցիալական հարցին մոտեցան նոր դիրքերից։ Նրանք իրենց գրականության նյութ դարձրին բանվոր դասակարգի պայքարը, ընդվզումը շահագործողների դեմ, ընդհուպ մոտենալով դասակարգային պայքարի գիտակցությանը։

Այս տեսակետից բացառիկ արժեք է ներկայացնում Վարուժանի բանվորական երգերի շարքը (Դադարը, Մայիսի 1-ը, Բանվորուհին, Մեքենաները և այլն), որոնք հեղինակն ամփոփել է Գողգոթայի ծաղիկներ խորագրի տակ։ Դրանք, առհասարակ, նորություն էին արևմտահայ գրականության համար և բերում էին յուրօրինակ թարմություն։ Ուշագրավը Վարուժանի լավատեսությունն էր, հավատը բանվոր դասակարգի ապագայի նկատմամբ։ Նա գիտակ-

*Պիեսի ամենացնցող տեսարաններից է պայքարում զոհված բանվորների հուղարկավորությունն ու թաղումը: Բանվորները՝ դագաղներն ուսներին, լուռ մտնում են գերեզմանատուն, մոտենում վաղօրոք փորված փոսերին: Գալիս է Սաթենիկը, դժգույն, բայց խրոխտ, ձեռքին կարմիր դրոշ: Նա կանգնում է մի տապանաքարի վրա, բարձր բռնում դրոշը և ասում.*

*— Մեր դաշունահար սրտերը մահարձանի փոխարեն պիտի բարձրանան այս շիրիմներուն վրա... Ա՛լ բավական է, դեպի կախաղան արդի արյունոտ օրենքները, դեպի կախաղան արդի արյունոտ կառավարությունը, դեպի կախաղան արդի արյունոտ աստվածը, մենք մեր աստվածը կուզենք, մենք մեր կառավարությունը կուզենք, մենք մեր օրենքները կուզենք. մա՜հ բոլոր բռնավորներուն, մահ բոլոր շահագործողներուն:*

*Բանվորները միաբերան բղավում են.— Մա՜հ... մա՜հ...*

*Սաթենիկը շարունակում է.*

*— Երդվեցեք այս սպանվածներովը, երդվեցեք անոնց կարմիր վերքերովը, երդվեցեք այս յոթը դագաղներովը, երդվեցեք այս յոթը գերեզմաններովը, երդվեցեք մեր տանջալից աշխատությամբը, որ պիտի առնենք վրեժը բոլոր աշխատավորության զոհերուն, վրեժը բոլոր անիրավության զոհերուն: Երդվեցե՛ք:*

*Բոլորը երդվում են:*

*Վրա են հասնում ոստիկանները: Փրարանցում: Ձերբակալություններ, իսկ բանվորները խրոխտ բղավում են.— Կեցցե՜ հեղափոխությունը, կեցցե՜ բանվորական դատը, անկցի՛ն բռնավորները:*

*Բանվորների ձայնն աստիճանաբար անլսելի է դառնում ոստիկանների կրակոցներից:*

*Մենք Լեոնյանի պիեսի վրա մի քիչ ավելի կանգ առանք ո՛չ միայն այն պատճառով, որ այն բացառիկ երևույթ էր արևմտահայ գրականության մեջ, այլև այն, որ տպագրված լինելով մամուլի էջերում, վրիպել է մեր բանասերների ուշադրությունից, մինչդեռ արժանի է լուրջ հետաքրքրության, մանավանդ, որ գաղափարական առողջ բովանդակության հետ մեկտեղ ունի գեղարվեստական նկատելի արժեք:*

***

*Անվարան կարելի է ասել, որ 1880-ական թվականների ռեալիստական շարժման մեջ Ա. Արփիարյանը միակն էր, որ ապրելով աշխարհայացքային ուրույն զարգացում, հանգեց սոցիալական հեղափոխության գաղափարին:*

*Հայտնի է, որ 1890-ական թվականների սկզբներից նա խանդավառվել է հնչակյան գաղափարներով, պայքարել դաշնակցության դեմ, 1895 թվականին ենթարկվել նրանց կազմակերպած ահաբեկման: Անցնելով արտասահման, մոտիկից ծանոթացել էր իր պատկանած կուսակցության գործունեությանը, գժտվել կենտրոնի հետ, գործել որպես վերակազմյալ հնչակյան. հետագայում հիասթափվել էր նաև կուսակցության պառակտված այդ հատվածից, ենթարկվել նոր ահաբեկի:*

*Գաղափարական որոնումների այս տարիներին էր, որ հյուսիսում փոթորկեց ռուսական առաջին հեղափոխությունը: Այդ օրերին Կահիրեում նա խմբագրում էր «Լուսաբեր» թերթը, որի էջերում օրը օրին արձագանքել է հեղափոխության ընթացքին՝ անվերապահորեն կանգնելով նրա պաշտպանության դիրքերում:*

*Ապրելով Ռուսաստանից հեռու, անշուշտ շատ հարցեր աղոտ էին հասնում նրան, սակայն, հակառակ դրան, զարմանալի հստակությամբ է նա ընկալել հեղափոխության մեծ դերը ո՛չ միայն Ռուսաստանի, նրա մաս կազմող ժողովուրդների ազատագրության գործում, այլև հասկացել է նրա համաշխարհային նշանակությունը:*

*«Պայթած հեղափոխությունը,— գրել է նա,— միահեծան իշխանություն մը չէ որ պիտի տապալե, այլ նաև տնտեսական դրություն մը, ուստի և տարակույս չկա, թե իր հաղթանակն օր մը պիտի սարսե ո՛չ միայն թագավորությունները, այլև հանրապետություններն ալ... վա՜խ անոնց, որ այսօր փլատակներուն տակը կմնան, բայց երնե՜կ անոնց, որ վաղվան համար պիտի ապրին» («Լուսաբեր», 1905, № 147):*

*Նրան ամենից առաջ ոգևորել է այն, որ հեղափոխությունը «ցեղային չէ, այլ ընկերային, դասակարգային»: Ի տես այդ հեղափոխության, ասում է նա, աշխարհի «բոլոր կալվածատերերը, դրամատերերը կսարսափահարին: Նորատեսիլ հեղափոխություն մըն է, որ կծագի. անոր դեմ թնդանոթը, հրացանը, սուրը անզոր պիտի գտնվին» (նույն տեղը, № 172):*

*Արփիարյանը հայ ժողովրդի ճակատագիրն էլ անվերապահորեն կապում էր ռուսական հեղափոխության հետ: Ով ինչ ուզում է թող ասի, գրել է նա, «Թուրքիո հպատակ Հայաստանի ապագան Ռուսիո կյանքեն կախում ունի... Քան երեկվան Ասորեստանը, այսօրվան Ռուսաստանը ճանչնալու պետք ունինք... Ոսկեբերանի տեղ՝ Կարլ Մարքսը» («Շիրակ», 1905, № 10—11):*

*Նույնիսկ հեղափոխության ժամանակավոր պարտությունից հետո Արփիարյանը հուսախաբություն չի ապրել, պահել է իր հաստատ հավատը վերջնական հաղթանակի նկատմամբ: «Թող չկարծվի, թե ռուսական շարժումը ջախջախվեցավ, լմնցավ,— գրել է նա,— ահեղ պատերազմ մըն է, որ կմղվի միահեծանության ու ժողովրդական իրավունքի միջև: Հեղափոխությունը կրնա քանի մը ճակատամարտ կորսնցնել, բայց վերջնական հաղթանակը իրեն պիտի մնա երկարատև կռվե մը հետո» («Լուսաբեր», 1906, № 171):*

*1880—1890-ական թվականներին Տուրգենևով, Լերմոնտովով, Ուսպենսկիով խանդավառված Արփիարյանն այժմ խորհուրդ էր տալիս թարգմանել և հայ երիտասարդությանը տալ Գերցենի գրքերը, գտնելով, որ նա «վաղվան Ռուսիան պատրաստողներեն մեկն է»:*

*Այս բոլորից հետո արդեն դժվար չէ հասկանալ գաղափարական այն շեշտակի շրջադարձը, որ նկատում ենք 1905 թ. հեղափոխության ազդեցությամբ գրված նրա գեղարվեստական ստեղծագործություններում, մասնավորապես* Մինչև երբ *և* Ոսկի ապարանջան *երկերում:*

*Առաջին պատմվածքում դեմ առ դեմ կանգնած են 30 տարվա սևագործ բանվոր Թորոսը և նրան շահագործող հայ էֆենդին, որի մոտ աշխատում են 5—6 հարյուր բանվոր:*

*Թորոսը տարիների ընթացքում իր խնայած գումարները պահ է դրել էֆենդու մոտ, որպեսզի երբ հայրենիք վերադառնա, տանա: Հիմա ծերացել, հյուծվել է և ուզում է գնալ գավառ՝ հարազատների մոտ: Խնդրում է իր գումարը, հարուստը մերժում է, ասում, թե իր մոտ չեն նրա փողերը:*

*— Աղա, մեմլեքեթ պիտի երթամ,— ասում է Թորոսը:*

*— Է երթաս բարով, աստված հետդ ըլլա, ես ի՞նչ ընեմ:*

*— Սա իմ հիսաբես բան մը տայիր... աղա, արդար հախս է, արևուն ու հովին դեմ քրտինք թափեր եմ... («Ընտիր երկեր», էջ 256):*

*Աղայի մարդիկ նրա ձեռից քարշ տալով՝ դուրս են գցում, դռան շեմքին դրված տրեխներն էլ ոտքով աստիճաններից ցած նետում:*

*Պատմվածքի վերջում բալուցի պանդուխտները Թորոսի որդուն մխիթարելով, ծառանում են շահագործողների դեմ, նրանց համեմատում թուրք և քուրդ բեկերի հետ և ցասումնալից ասում.*

*— Ա՜խ, աստված, աս մինչև ե՞րբ պիտի քաշենք. մինչև ե՞րբ, մինչև ե՞րբ:*

*Վերոհիշյալ պատմվածքում Արփիարյանը չի տվել այդ երբ-ի պատասխանը, ոչ էլ այն ճանապարհը, որով պիտի պաշտպանեին իրենց շահերը բանվորները: Այդ նա տվել է* Ոսկի ապարանջան *վիպակի այն տարբերակում, որը գրել է 1904—1905 թվականներին, ավարտել հեղափոխության ամիսներին և մաս-մաս ուղարկել է Կովկաս՝ Հ. Առաքելյանին, տպագրելու համար:*

*Այստեղ էլ դեմ դիմաց կանգնած են 40 տարվա գրաշարական աշխատանքում հյուծված ու քայքայված, այժմ որպես անաշխատունակ տպարանից դուրս շպրտված Ղուկասը և տպարանատեր Գասպար էֆենդին:*

*Արփիարյանը հուզիչ է նկարագրել գրաշար Ղուկասի առօրյան, որ շատ է հիշեցնում Պեպոյի հայտնի մենախոսությունը. ահա մի քանի հատված. «Ջմեռ*

է, առտուն մութն ու լուսուն ելիր վափոռ վազե, պատառ մը բան ճոկե, շնթըռկե։ Առտուն զնկոտա, զնկոտա։ Ոտքեդ գլուխդ ջուրերը թաթխված տպարան եկուր, մինչև իրիկուն ոտքի վրա դատե ու դատե, բերանդ քիչ մը պանիր հաց նետե, բանե տե բանե, մինչև մութը կոխե... Աման է, վերեն կրակներ կթափին, վազե վափոռին, վազե տե վազե։ Արուն քրտինք մտած մինչև իրիկուն խավուրմիշ եղիր, մութուն հելլաք տուն ինկիր...» (նույն տեղը, էջ 314—315)։ «էշը շատ բեռցնելու ըլլաս նե, խաֆան կտնկե կկենա, տերը բան չունի նե թող վրան փատ կոտրտե... իր իրավունքը պաշտպանող էշը անոթի չեն սատկեցներ։ Մարդ չէ քի կոնակին թեքմե տան դուրս նետեն» (էջ 283)։

Վերջին տողերով հեղինակը դատապարտում է բանվորների կրավորական վերաբերմունքը, հիշեցնելով, որ անբան անասուններն անգամ իրենց իրավունքը պաշտպանել գիտեն։

Գրաշար Ղուկասը քննադատում է, բայց լուծում չի առաջարկում։ Այդ լուծումը հեղինակը տալիս է մի ուրիշ հերոսի՝ բանվոր Արտաշի միջոցով. վերջինս ակտիվ պայքարի կոչ է անում։ Երբ Ղուկասն ասում է, թե այդ հասարակարգում արհեստը դադարել է «ոսկի պիլեզիկ, ապրանջան» լինելուց, դարձել է շղթա մարդկանց ձեռքին, Արտաշն ասում է. «Ախ, Ղուկաս աղա, արհեստը ինքը ինչ հանցանք ունի, ամեն արհեստ իրավ ոսկի պիլեզիկ է, ձեռքերնիս կոտրողը կապիտալն է, արհեստավորի օջախին մուխը մարողը կապիտալիստն է, անոնց հախեն գալու ենք քի ազատինք»։ Ղուկասը չի հասկանում Արտաշի միտքը։ Վերջինս ավելի հստակ բացատրում է ու ասում. «Կապիտալիստը, Ղուկաս աղա, իշտե ան քու էֆենդին է քի զատկի օրերով քեզի ասանկ դուրս նետեց» (էջ 331—332)։

Ավելի բնորոշ է Արտաշի հետևյալ արտահայտությունը. «Մենք մեր արդար իրավունքը պիտի պահանջենք, ալ թող պիտի չի տանք, որ մեզի բնտոր ուզեն նե առնեն ծախեն, տանջեն, չարչարեն ու մենք ալ մունջ, համր նստինք։ ...Գերիները ազատեցան, մենք ալ պիտի ազատինք» (էջ 332)։

Ոսկի ապրանջան վիպակը ոչ միայն իր գաղափարական բովանդակությամբ, այլև գեղարվեստական արժանիքներով նշանակալից երևույթ էր հեղինակի ռեալիստական արձակում։ Խոսքի ժլատությամբ, սեղմությամբ, պատկերավոր մտածողությամբ, ժողովրդական բառ ու բանի տեղին օգտագործմամբ Արփիարյանը կարողացել է տալ ավարտուն մի գործ, որը քանիցս վերահրատարակվել է, տպագրվել նաև մեր օրերում։

Պատմվածքի այս արժանիքներին պիտի վերագրել այն փաստը, որ բոլշևիկյան քննադատությունը նույնպես բարձր է գնահատել Ոսկի ապրանջանը։ Այսպես, Ալ. Մյասնիկյանը 1922 թ. «Մուրճ» ամսագրի առաջին համարի առիթով գրած գրախոսությունում Արփիարյանի այդ ստեղծագործությունը համարել է «անպայման լավ ու օրինակելի մի երկ»։

***

Այսպիսով, սոցիալական թեման եղել է առանցքային հարց ռեալիզմի շրջանի արևմտահայ գրականության մեջ, զբաղեցրել բոլոր գրողներին, ունեցել զարգացման ուրույն ընթացք, առավել դեմոկրատական գրողների մոտ հանգելով դասակարգային պայքարի գաղափարին։

# ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԿԱՊԵՐԸ

## ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐՈՎ ՏՈԳՈՐՎԱԾ

Մեր երկրի տարբեր ազգերի անխախտ միությունն ու եղբայրական բարեկամությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամենավառ արտահայտությունն են, սոցիալիստական հասարակարգի, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության խոշորագույն նվաճումը։ «Այդ բարեկամությունը,— ասված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն է, սովետական հասարակության հզոր շարժիչ ուժը, ՍՍՀՄ բոլոր ազգությունների աշխատավորների ստեղծագործական կառուցման անսպառ աղբյուրը՝ հանուն ամենաազնիվ նպատակի՝ կոմունիզմի կառուցման» (էջ 5)։

Տարբեր ազգությունների պրոլետարներին մեկ միասնական ինտերնացիոնալ կազմակերպության մեջ միավորելու և այդ հիմքի վրա մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցությունն ամրապնդելու խնդիրը շարունակ եղել է կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում։ Իր գործունեության մեջ կուսակցությունը հետևողականորեն առաջնորդվել է Վ. Ի. Լենինի մշակած ծրագրային փաստաթղթերով, որոնցում տրված է ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալ փոխհարաբերությունների հաստատման ուղին։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը խնդիր դրին՝ հաղթահարելու հին կարգերից ժառանգություն մնացած ազգային թշնամանքն ու անվստահությունը, կոմունիստական հասարակարգի կառուցման ընթացքում կազմակերպելու և ամրապնդելու ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների պետական դաշինքն ու համագործակցությունը, նրանց միջև հաստատելու տնտեսական, քաղաքական, կուլտուրական ամուր կապեր։ Կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ ազգային մոմենտները հաշվի առնելու, սովետական իշխանության քաղաքականությունը լուսաբանելու, կոմունիզմի գաղափարները տարածելու և աշխատավորական լայն զանգվածներին սոցիալիզմի կառուցմանն ակտիվորեն ներգրավելու նպատակով, նահանգային և գավառային կոմիտեներին կից (որտեղ ապրում էին կոմպակտ ազգային փոքրամասնություններ), ստեղծվեցին կոմունիստական ազգային սեկցիաներ։ Ամեն մի սեկցիա միավորում էր այդ նահանգում կամ գավառում տվյալ ազգության կոմունիստներին։ Սեկցիայի գործունեությունը ղեկավարում էր բյուրոն։ Նահանգում կամ գավառում գործում էին մեկ կամ մեկից ավելի սեկցիաներ իրենց բյուրոներով։ Նրանց աշխատանքը կոորդինացնելու նպատակով ստեղծվել էին կենտրոնական բյուրոներ, որոնք ենթարկվում էին կուսակցության այն օրգանին, որին կից նրանք գտնվում էին։

Ազգային կոմունիստական սեկցիաներն իրենց կազմավորման առաջին իսկ օրերից եռանդուն ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք ծավալեցին իշխող դասակարգերի հանցավոր քաղաքականության թողած հետքերը վերացնելու և ժողովուրդների լենինյան բարեկամության գաղափարները մասսայականացնելու ասպարեզում։

Ազգային փոքրամասնությունների ենթաբաժինները որպես կոմունիստական ազգային սեկցիաների ներկայացուցիչներից կազմված օրգաններ, վարում էին դրանց գործունեությունը և բնականաբար հոգում տվյալ շրջանի ազգային փոքրամասնությունների ինտերնացիոնալ դաստիարակության և եղբայրական կապերի ամրապնդման մասին։ Կոմունիստական սեկցիաների համատեղ ջանքերով կազմակերպվում էին ինտերնացիոնալ երեկոներ, դասախոսություններ, ներկայացումներ, համերգներ և այլն։ Նրանք համագործակցում և միմյանց օգնում էին կուլ-

մենստանի ազգային փոքրամասնությունների՝ պարսիկների, ադրբեջանցիների ու հայերի շրջանում պրոպագանդա էր տարվում թերթին նյութական օգնություն ցույց տալու համար։ Կուսակցության մարզային կոմիտեին իր գործունեության մասին տված հաշվետվության մեջ ենթաբաժինն այդ առթիվ գրել է. «...Հիշյալ ազգությունների շրջանում կամպանիա է տարվում «Կարմիր շող» թերթը նյութապես ապահովելու ուղղությամբ»[1]։

Ազգային փոքրամասնությունների բարեկամությունն ու համագործակցությունը արմատավորվել էր կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և գյուղատնտեսական ոլորտում, որտեղ փոխադարձ օգնության և համատեղ աշխատանքի միջոցով, գյուղացիները կարողանում էին արագորեն վերականգնել իրենց տնտեսությունները։

Ավելի արդյունավետ էր միասնական կոոպերատիվների և արտելների կազմակերպումը, որտեղ ընդգրկվում էին տվյալ շրջանի բոլոր ազգային փոքրամասնությունները։ Նման մի կոոպերատիվ 1924 թ. կազմակերպվել է Կուբանի մարզի Գորյաչիե Կլյուչիում և կոչվում էր «ազգային փոքրամասնությունների ծխախոտագործների միություն»։ Այն իր ճյուղերն ուներ շրջանի բոլոր գյուղերում։ Պետությունն ընկերությանը հատկացնում էր գյուղատնտեսական գործիքներ, վարկ և այլն։ Մինչ այդ ստեղծված ավելի փոքր կոոպերատիվները, որոնք դժվարությամբ էին վարում իրենց տնտեսությունները, ձուլվելով ազգային փոքրամասնությունների կոոպերատիվում, հնարավորություն ստացան արագորեն ոտքի կանգնել։ Շուտով այս կոոպերատիվի կյանքում նկատելի տեղաշարժեր եղան. նրա ուժերով նորոգվեցին լեռնային գյուղերի ճանապարհները, յուրաերում ցորենի պահեստներ կառուցվեցին և այլն։ Կոոպերատիվն ուներ կուլտուր-կրթական ճյուղ, որը բաց էր արել շրջանային լուսավորության տուն, ստանում էր հայերեն և ազգային այլ փոքրամասնությունների լեզուներով թերթեր։ Կազմակերպվել էին խմբակներ, լույս էր ընծայվում պատի թերթ, որին ակտիվ մասնակցում էին գյուղացիները։ «Ժողովուրդը չափազանց գոհ է և օրըստօրե համախմբվում է կոոպերատիվի շուրջը»[2],— գրում է «Մարտակոչ»-ի թղթակից Թ. Երիցյանը։

Ազգային փոքրամասնությունների ծխախոտագործների միության մասին գովեստով է արտահայտվել հայկական սեկցիան, երբ 1925 թ. փետրվարին իր հաշվետու զեկուցման մեջ գրել է. «Գորյաչիե Կլյուչիում ազգային փոքրամասնությունների բնակչության խնդրանքով կազմակերպվել է ծխախոտագործների կոոպերատիվ, որն ունի 250 անդամ։ Գործի դրվածքը լավ է։ Ազգաբնակչությունը շատ-շատ գոհ է»[3]։

Ազգային փոքրամասնությունների միջև հաստատված բարեկամությունը և փոխադարձ եղբայրական օգնությունը հնարավորություն տվեցին աստիճանաբար հաղթահարելու ցարիզմի և ազգային հարստահարիչների երկակի ճնշման ծանր հետևանքները։

Անհաշտ պայքար մղելով տեղական նացիոնալիզմի դեմ, ազգային կոմունիստական սեկցիաներն այդ պայքարն ամբողջովին ծառայեցնում էին ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորների դաստիարակության խնդրին։ Առանց այդ պայքարի հնարավոր չէր լինի ամրապնդել ժողովուրդների միասնությունն ու համագործակցությունը։

Սովետական ժողովուրդների բարեկամությունը մեր հայրենիքի բարգավաճման և անպարտելիության գրավականն է։ Սովետական սոցիալիստական բազմազգ պետության մեջ են Սովետական Միության ժողովուրդները տեսնում իրենց ուժն ու հզորությունը, իրենց հետագա առաջընթացի գրավականը։ Սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության գործում իրենց ավանդը ներդրին նաև կոմունիստական ազգային սեկցիաները։

Հ. Վ. ՕՀԱՆՅԱՆ

[1] ПА ИИ ЦК КП Туркм., ф. 4, оп. 1, д. 1097, л. 14.

[2] «Մարտակոչ», Թիֆլիս, № 157, 11 հուլիսի, 1925 թ.։

[3] ПА КК, ф. 8, оп. 1, д. 172, л. 5.

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ԼՈՒՍԱՎՈՐ ՈՒՂԻՆԵՐՈՎ

(ՉԵՉԵՆՈ-ԻՆԳՈՒՇԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐ ՍՍՀ-Ի ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՓՈՐՁԻՑ)

ՍՄԿԿ ծրագրում հատկապես շեշտված է, որ կոմունիստական հասարակարգի կառուցման ընթացքում առավել կարևոր է դառնում կուսակցության գաղափարական աշխատանքը։ Այս ասպարեզում էական է կուլտուր-լուսավորական հաստատությունների դերը։ Խոսելով այդ բնագավառի աշխատանքների էության մասին, Լենինը նշել է, որ այն պետք է շաղկապված լինի բանվոր դասակարգի պայքարի ընդհանուր քաղաքական խնդիրներին, նպաստի աշխատավորների գիտակցական, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը, նրանց առաջընթացին, նախապատրաստի աշխատավորությանը պետության կառավարման գործին։ Լենինն ընդգծել է, որ քաղաքական-մասսայական աշխատանքը կուսակցական ագիտացիայի և պրոպագանդայի մասն է կազմում, որի նպատակն է աշխատավորական զանգվածներին դաստիարակել կոմունիզմի ոգով։

Սովետական իշխանության տարիներին կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով լենինյան ցուցումներով, վիթխարի աշխատանք է կատարել կուլտուր-լուսավորական հաստատությունների ցանցի ընդլայնման բնագավառում, օգտագործել է գաղափարական ներգործության՝ դրանց հատուկ ձևերն ու մեթոդները աշխատավորության սոցիալիստական գիտակցության զարգացման, նրանց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման մասնակիցներ դարձնելու, ժողովրդա-տնտեսական պլանների կատարումը խթանելու նպատակով։

ՍՄԿԿ XXIV համագումարում, Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կոմունիզմն անհնար է առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։

Կոմունիզմի հաղթանակի համար գաղափարական ու կուլտուրական անհրաժեշտ պայմանների ստեղծման գործում մեծանում է հատկապես կուլտուր-լուսավորական աշխատանքի դերը։ Այն կազմակերպող հաստատությունները՝ ակումբները, կուլտուրայի տները, գրադարանները խիստ մասսայական են, մոտ են ժողովրդին, ծառայում են միլիոնավոր աշխատավորներին, նպաստում նրանց քաղաքական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը, կուլտուրական հանգստի պատշաճ կազմակերպմանը, գիտա-տեխնիկական ու գեղարվեստական ստեղծագործության զարգացմանը։

Հնգամյակի տարիներին, առաջնորդվելով ՍՄԿԿ համագումարների որոշումներով, մեր կուսակցության ծրագրով և գաղափարական հարցերին նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներով, Չեչենո-Ինգուշական Ինքնավար Հանրապետության կուսակցական կազմակերպությունը շնորհակալ գործ է կատարել՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում կուլտուրայի օջախների դերի բարձրացման, դրանց գործունեության կատարելագործման նպատակով։ Հանրապետությունում զգալիորեն ընդլայնվել է այդ հաստատությունների ցանցը. այսպես, 1940 թ. կային 285 ակումբներ, 1966-ին՝ 333, 1974-ին՝ 391, իսկ մասսայական գրադարաններ՝ համապատասխանաբար՝ 198, 343, 427։ Այդ վերընթացը հատկապես ակնբախ է գյուղական վայրերում։ Այսպես, 1959—65 թվականներին գյուղական շրջաններում ակումբների թիվը 252-ից հասավ 285-ի, 1974-ին՝ 347-ի։ Չեչենո-Ինգուշեթիայում գործող կուլտուր-լուսավորական բոլոր հաստատությունների թիվն այժմ հասնում է 1.156-ի. միայն Նոժայ-Յուրտովյան շրջանում 1959—65 թթ. դրանց թիվը 16-ից հասել է 52-ի, որոնցից 20-ը կառուցվել են հասարակական հիմունքներով, աշխատավորության նախաձեռնությամբ։

Նոժայ-յուրտովցիների՝ ՍՄԿԿ մարզկոմի կող-

միջ խրախուսված այդ լավ նախաձեռնությունը լայն արձագանք գտավ ողջ հանրապետությունում: Ցյոլկովսկի շրջանի Գորկու անվան և «Հոկտեմբերի 12 տարին» կոլտնտեսություններում կառուցվել են 500 տեղանոց ակումբներ, 400 տեղանոց է կառուցվել Ախչոյ-Մարտանովսկի շրջանի Կադի-Յուրտ գյուղի «Կարմիր բանակ» կոլտնտեսությունում: Կուլտուրայի գյուղական օջախների ընդլայնման գործում լավ արդյունքների են հասել Նադտերեչնիի, Նաուրսկի, Վեդենոյի շրջանների տնտեսությունները:

Կուսակցության մարզկոմը ջանում է այնպես անել, որ կուսկազմակերպությունները բարելավեն հանրապետության կուլտուր-լուսավորական հաստատությունների նյութական բազան: Այդ նկատառումով նրանք կազմել են կուլտուր-լուսավորական հաստատությունների ցանցի ընդլայնման, դրանց տնտեսական բազայի ամրապնդման կոնկրետ պլաններ, ներառյալ նաև սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների, կոոպերատիվ կազմակերպությունների միջոցները: Խիստ վերահսկողություն է սահմանվել կոլտնտեսությունների ու սովխոզների կապիտալ ներդրումների, կուլտֆոնդի ճիշտ ծախսման վրա, հատկացված միջոցների վատնում, աննպատակ գործադրում թույլ չտալու նպատակով: Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և հասարակական այլ կազմակերպությունների նպատակային, պլանավորված գործունեությունը հնարավորություն ընձեռեց զգալիորեն ընդլայնելու կուլտուր-լուսավորական հաստատությունների ցանցը, ամրապնդելու դրանց նյութական բազան:

Դաստիարակչական հաստատություններից են նաև ակումբները: Քաղաքական-դաստիարակչական աշխատանքը համարելով մասսաների գաղափարական դաստիարակության միջոցներից մեկը՝ Վ. Ի. Լենինն ընդգծել է. «Պետք է ընդլայնել բանվորական մասսայի վրա ունեցած մեր ազդեցության ոլորտը: ...Պետք է ուշադրություն դարձնել ակումբներին...» (Երկեր, հ. 28, էջ 56): Քաղմասսայական, կուլտուր-լուսավորական աշխատանքն այստեղ շաղկապվում է աշխատավորության հանգստի հետ. ակումբներն օգտագործվում են կուլտուրայի, արվեստի բոլոր տեսակների տարածման համար: Դրանք կազմակերպում են դասախոսություններ, թեմատիկ երեկոներ, հանդիպումներ ականավոր մարդկանց հետ, ընթերցումներ, գիտա-տեխնիկական կոնֆերանսներ, ինքնագործ կատարողների և պրոֆեսիոնալ արտիստների ելույթներ, կինո-դասախոսություններ, բանավոր ամսագրեր, օգտագործում են ցուցադրական ագիտացիայի տարբեր միջոցները— ռադիո, հեռուստատեսությունը և այլն: Այս ասպարեզի աշխատանքները կազմակերպելիս, մասսաների շրջանում տարվող բացատրական աշխատանքի ներգործունությունն ապահովելու համար, կուսակցական պրոպագանդայի և ագիտացիայի ձևերը զուգորդվում են կուլտուր-լուսավորական աշխատանքի յուրահատուկ ձևերի ու մեթոդների հետ:

Չեչենո-Ինգուշական Ինքնավար Հանրապետության կուսկազմակերպությունն աշխատավորների կոմունիստական դաստիարակության կազմակերպման նպատակով լայնորեն օգտագործում է մշակույթի պալատները, կուլտուրայի տները, ակումբները: Հանրապետության կուսկազմակերպության փորձն ակնհայտ դարձրեց, որ պատշաճ ղեկավարության, աշխատանքի բանիմաց կազմակերպման դեպքում ակումբներն ի վիճակի են բնակչության շրջանում պրոպագանդելու կուսակցության քաղաքականությունը, դառնալու նրա գաղափարների տարածման, աշխատավորների դաստիարակության, կուլտուրական հանգստի կենտրոնատեղիներ: Հանրապետության կուսկազմակերպությունները կարևոր նշանակություն են տալիս ակումբներում քաղմասսայական աշխատանքի ծավալմանը, որն իրականացվում է ինչպես կուսակցական պրոպագանդայի ու ագիտացիայի ավանդական, նույնպես և կուլտուր-լուսավորական գործունեության նորանոր ձևերով ու եղանակներով: Քաղդաստիարակչական աշխատանքն ակումբների գործունեության կարևորագույն մասն է:

Քաղմասսայական աշխատանքի բաղկացուցիչ տարրերից մեկն է արտադրատեխնիկական պրոպագանդան: Կոմունիստական հասարակության կառուցման ժամանակաշրջանում տեխնիկական գիտելիքների տարածման և գործնական կիրառման անհրաժեշտությունը հանրային արտադրության զարգացման, գիտատեխնիկական պրոգրեսի պահանջն է: Ամենուր պահանջվում են քաղաքականապես բանիմաց, բազմակողմանի զարգացած նոր, որակյալ աշխատողներ: Տեխնիկական առաջընթացն զգալիորեն կբարձրացնի պահանջը կուլտուրայի նկատմամբ, արտադրության մեջ բոլոր աշխատողների մասնագիտական ու հանրակրթական պատրաստականության նկատմամբ— կարդում ենք ՍՄԿԿ ծրագրում:

Ակումբներում բոլոր հնարավորությունները կան աշխատավորների պոլիտեխնիկական գիտելիքների հարստացման, մասնագիտական որակավորման բարձրացման, աշխարհայացքի ընդլայնման համար: Ակումբների տարածուն ցանցը պայմաններ է ստեղծում աշխատավորական առավել հոծ զանգվածների ընդգրկման: Արդյունաբերական և գյուղական կենտրոններում դրանց տեղաբաշխման արտադրական սկզբունքը հնարավորություն է ընձեռում ինչպես հարկն է բավարարելու ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների աշխատողների սպեցիֆիկ պահանջները: Ակումբներում գիտական ու տեխնիկական հարցերից բացի, ուսումնասիրում են նաև արտադրատեխնիկական պրոպագանդայի, գեղագիտական, էթիկական պրոբլեմները:

Կուսակցական որոշումներում բազմիցս նշվել է աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման, առաջավոր փորձի պրոպագանդման նպատակով ակումբային աշխատանքի ձևերի յուրահատկությունների ու առավելությունների օգտագործման անհրաժեշտության մասին: Ակումբներում լայնորեն տարածված են արտադրատեխնիկական պրոպագանդայի նորանոր ձևեր՝ «Վարպետի օր», «Նորարարի օր», կոմունիստական աշխատանքի և առաջավոր փորձի դպրոցներ, ակումբներին կից տեխնիկական կաբինետներ, ժողովրդական համալսարաններ՝ գիտատեխնիկական գիտելիքների ֆակուլտետներով: Այժմ Չեչենո-Ինգուշական Ինքնավար Հանրապետությունում գործում են ժողովրդական ավելի քան 36 համալսարաններ՝ 8.438 ունկնդիրներով: Դրանցից 16-ը՝ 4.496 ունկնդիրներով, գործում են գյուղական վայրերում: Այդ համալսարաններն ունեն 12 բաժին, 5 մասնաճյուղ: Հատկապես տարածված են հասարակական-քաղաքական, ինչպես և տնտեսագիտական, մանկավարժական, իրավագիտական, բժշկագիտական ժողովրդական համալսարանները: Վերջիններիս գործունեության առավել բարելավման նպատակով մասսայականացվում է լավագույնների փորձը, ուսումնասիրվում դրանց գործունեությունը ղեկավարող կուսկազմակերպությունների օրինակելի աշխատանքը:

ՍՄԿԿ Չեչենո-Ինգուշական մարզկոմի XIV կոնֆերանսը մի անգամ ևս նշեց, թե որքան կարևոր է ժողովրդական համալսարանների արդյունավետության բարձրացումը մասսաների շրջանում գիտելիքների տարածման նպատակով, որքան էական է կուսկազմակերպությունների բանիմաց ղեկավարությունն այս ասպարեզում, օգնելու համար աշխատավորությանը՝ ժամանակին և ինչպես հարկն է կատարելու հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները:

Գրոզնու շրջանի գյուղատնտեսության աշխատողների մեծ մասն ընդգրկված է գյուղատնտեսական գիտելիքների համալսարանում, որն ունի 3 ֆակուլտետ: Այնտեղ, ուր հնարավոր չի եղել կազմակերպել տեխնիկական ու գյուղատնտեսական գիտելիքների համալսարաններ, ստեղծվել են տեխնիկական և արտադրական պրոպագանդայի լեկտորիումներ: Ցյոլկովսկի շրջանի կուսկազմակերպությունը, նկատի առնելով անասնաբույծների աշխատանքի առանձնահատկությունները, հանձնարարեց ակումբներին ստեղծել նրանց համար կոնկրետ էկոնոմիկայի լեկտորիումներ, տնտեսագիտական սկզբնական դպրոցներ:

Կուսակցության մարզային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում գյուղական ակումբների գործունեությանը՝ հատկապես գյուղատնտեսական, ագրոտեխնիկական գիտելիքների, սովխոզների բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքային առաջավոր փորձի, գիտության ու տեխնիկայի նվաճումների պրոպագանդման առումով: Հանրապետության գյուղական շրջանների կուսկազմակերպությունները մշտապես կատարելագործում են աշխատանքային մեթոդները, արտադրատեխնիկական պրոպագանդայում օգտագործելով կուլտուր-լուսավորական հաստատությունները: Վերջին ժամանակներս կազմակերպվել են պարապմունքներ, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, մեր կուսակցության համագումարների որոշումների ուսումնասիրման նպատակով:

Գործող ակումբները լայնորեն օգտագործում են քաղմասսայական աշխատանքի՝ սոցմրցությունը խթանող տարբեր ձևեր, պրոպագանդում հայրենասիրական ավանդույթներն ու ձեռնարկումները: Աշխատանքային փառքի երեկոներ, առաջավորների հանդիսավոր նիստեր, աշխատանքի վետերանների մեծարումներ, ցուցատախտակներ, պատվոտախտակներ և այլն. այս ամենը համակում է երիտասարդությանը աշխատանքի մարդու նկատմամբ խորին հարգանքով:

Սոցմրցության կազմակերպման գործում Չեչենո-Ինգուշական Ինքնավար Հանրապետության կուսկազմակերպություններին մեծապես օգնում են ակումբները, պրոպագանդելով առաջավոր փորձը, օգնելով մրցողներին: Կուլտուրայի շատ հաստատություններ, ինչպես քաղաքում, նույնպես և գյուղում դարձել են արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպությունների մշտական օգնականը սոցիալիստական պարտավորությունների, պետական պլանների կատարման գործում: Այսպես, բիմիկոսների կուլտուրայի տունը, ժողովելով բազմամարդ ակտիվ և կիրառելով կուլտուր-լուսավորական աշխատանքի այլազան ձևեր, օգնել է ձեռնարկության կոլեկտիվին՝ պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները. կազմակերպվել են մրցող արտադրամասերի հանդիպման երեկոներ, հանդիպումներ աշխատանքի վետերանների հետ. հետաքրքրական էին «Սովորենք և աշխատենք կոմունիստաբար», ինչպես և Մ. Գորկու անվան ակումբի կազմակերպած՝ «Միշտ կուսակցության հետ» թեմատիկ երեկույթները:

Աշխատավորների՝ սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարմանն օգնելու, նրանց մոբիլիզացնելու գործում կուսկազմակերպություններին մեծապես օժանդակել են կուլտուրայի տների ու ակումբների ագիտ-գեղարվեստական բրիգադները: Նրանք հաճախ են լինում դաշտերում, ոչխարաբուծական յայլաղ-



ներում, իսկ քաղաքներում ու բանավաններում ելույթներ ունենում տարբեր ձեռնարկություններում, զբոսայգիներում: Հանրապետությունում գործում է ավելի քան 80 ագիտբրիգադա, որոնցից լավագույններն են՝ Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի անվան, քիմիկոսների կուլտուրայի տների, Մ. Գորկու անվան և կուլտուրայի աշխատողների ակումբների ագիտբրիգադները:

Գրոզնու Լենինյան շրջանի վերանորոգման-մեխանիկական գործարանի կուսկազմակերպությունը մեծ նշանակություն է տալիս ագիտբրիգադայի գործունեությանը, կազմակերպում դաստիարակչական բովանդակալից միջոցառումներ: Այդ ագիտբրիգադայի անդամների մեծ մասը կոմունիստական աշխատանքի հարվածայիններ են. հաջողությամբ են անցնում նրանց կազմակերպած համերգները, դասախոսությունները և այլ ձեռնարկումներ, հատկապես, աշխատանքային լավագույն ավանդույթների արմատավորման նպատակով: Չէ՞ որ միշտ էլ «...բանվոր դասակարգին հեղինակություններ հարկավոր են,— գրել է Լենինը,— բայց, հասկանալի է, միայն այն իմաստով, ինչ իմաստով երիտասարդ բանվորներին հարկավոր է ճնշման ու շահագործման դեմ հին մարտիկների փորձը, մարտիկներ, որոնք անց են կացրել շատ գործադուլներ, մասնակցել մի շարք հեղափոխությունների, իմաստնացել հեղափոխական ավանդույթներով ու քաղաքական լայն մտահորիզոնով» (Երկեր, հ. 11, էջ 518): Իլյիչը նշել է, որ կուսակցությունը պետք է ծավալի դաստիարակչական լայն աշխատանք, որպեսզի «...այն սովորությունները, ունակությունները, համոզմունքները, որ բանվոր դասակարգը շատ տասնամյակների ընթացքում իր մեջ մշակել է քաղաքական ազատության համար մղած պայքարում... այդ սովորությունների, ունակությունների, իդեաների ամբողջ գումարը ծառայեն որպես աշխատավորներին դաստիարակելու գործիք» (Երկեր, հ. 31, էջ 457): Առաջնորդվելով Լենինի ցուցումներով՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր համագումարների որոշումներում բազմիցս նշել է, որ կուսակցության և կոմերիտմիության գաղափարա-քաղաքական ողջ գործունեության նպատակը պետք է լինի՝ երիտասարդ սերնդին զինել մարքս-լենինյան աշխարհայացքով, արմատավորել տեսության ու պրակտիկայի հարցերին դասակարգային մոտեցումը, նվիրվածություն կոմունիստական կուսակցության մեծ գործին:

Չեչենո-Ինգուշեթիայի կուսկազմակերպությունը մեծ ուշադրություն է նվիրել այն բանին, թե աշխատավորների, հատկապես երիտասարդության դաստիարակության ոլորտում ինչպե՞ս են արմատավորվում հեղափոխական-մարտական և աշխատանքային ավանդույթները: Հանրապետության կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների ղեկավարությամբ կուլտուր-լուսավորական հաստատություններն զգալի հաջողությունների են հասել աշխատավորներին հեղափոխական ավանդույթներով դաստիարակելու գործում: Սակայն, դեռևս կան զգալի թերություններ, հատկապես ակումբները, կուլտուր-լուսավորական հաստատությունները բարձրորակ մասնագետներով ապահովելու մարզում:

Մեծ, պատասխանատու խնդիրներ առաջադրեց ՍՄԿԿ XXIV համագումարը նաև մեր երկրի կուլտուր-լուսավորական հաստատություններին. դրանց լուծման համար անհրաժեշտ է առավել կատարելագործել այդ օջախների ղեկավարությունը, որպեսզի դրանք իրոք դառնան աշխատավորության դաստիարակության կարևորագույն հաստատություններ:

ՅՈՒ. Գ. ՄՍՐՅԱՆ

Գրոզնի

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 05563 Պատվեր 1862 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 13.400 Գինը 20 կ.:*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 21/XI-1974 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՄԱՐՔՍ— Կապիտալ: *Քաղաքատնտեսության քննադատության շուրջ, հ. II, Մ.,* «Политиздат», *1974:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մարքսիզմ և ռևիզիոնիզմ. *Մ.,* «Политиздат», *1974:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պետության մասին, *Մ.,* «Политиздат», *1974:*

Վ. Ի. Լենինը սովետական պետության արտաքին տնտեսական կապերի մասին *(ժողովածու). Մ.,* «Политиздат», *1974:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Կուսակցության և ժողովրդի մեծ սխրագործությունը. *Մ.,* «Политиздат», *1974:*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Լենինյան կուրսով: *Հոդվածներ և ճառեր, հ. 4. «Հայաստան» հրատ., 1974:*

Վ. Գ. ԿԼՅՈՒԵՎ— Կուսակցական աշխատանքը կենցաղսպասարկման ոլորտում. *Մ.,* «Политиздат», *1974:*

Ա. Վ. ՉԵՐՆՈՒԽԻՆ— Քաղաքական ուսուցումը ձեռնարկություններում. *Մ.,* «Политиздат», *1974:*

Գ. Ա. ԿՈՒՏՈՒՐԺԵՎՍԿԻ, Վ. Ա. ՍՄԻՌՆՈՎ— Սոցիալիստական մրցությունը. *Մ.,* «Политиздат», *1974:*

Կ. Ի. ՍՈՒՎՈՐՈՎ— Մեր կուսակցության անունը. *Մ.,* «Политиздат», *1974:*

Ի. Ֆ. ՍՈՒՍԼՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսությունը. զարգացման օրինաչափությունը. *Մ.,* «Мысль» *հրատ., 1974:*

Ս. Ա. ԵՐՇՈՎ— Բանվորական ուժի պրոբլեմները զարգացած կապիտալիստական երկրներում. *Մ.,* «Мысль» *հրատ., 1974:*

Ս. Ի. ՍՏԵՊԱՆԵՆԿՈ— ՏՓԽ երկրների գիտա-տեխնիկական համագործակցության կատարելագործումը. *Մ.,* «Мысль» *հրատ., 1974:*

Ժողովրդատնտեսական կոմպլեքսային պլանավորումը. *Մ.,* «Экономика» *հրատ., 1974:*

Ա. Ս. ԿՈՒԴՐՅԱՎՑԵՎԱ— Հանրային աշխատանքի սոցիալիստական կազմակերպումը. *Մ.,* «Экономика» *հրատ., 1974:*

Հ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Մոլեգին գալակտիկաներ. *Ե., ԳԱ հրատ., 1974:*

*Գրքում հեղինակը պատմում է գալակտիկաների աշխարհի, կառուցվածքների և այլ երևույթների մասին:*

Ա. Մ. ՊՈՂՈՍՅԱՆ— Հայ-ռուս բարեկամության պատմությունից. *«Հայաստան» հրատ. 1974:*

Վ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ— Պարտին հավատարիմ *(ռուսերեն). «Հայաստան» հրատ., 1974:*

Մերձավոր ու Միջին Արևելքի միջազգային հարաբերությունները երկրորդ համաշխարհային պատերազմից հետո *(40—50-ական թթ.). Մ.,* «Наука» *հրատ., 1974:*

Դպրոցականների գեղագիտական դաստիարակությունը (ժողովածու). *Մ.,* «Педагогика» *հրատ., 1974:*

Ե. ԿՈՋԱՅԻ— Արդի փիլիսոփայություն: Դիտողություններ «Յամարոյի ոգու» մասին *(թարգմ. ճապոներենից). Մ.,* «Наука» *հրատ., 1974:*

Արդի փիլիսոփայությունը *հեղինակի 1937 թ. հրատարակած երկն է, որը ժամանակի հակաֆաշիստական լուրջ աշխատություն էր:* Դիտողություններ «Յամարոյի ոգու» մասին *գրված 1969 թ. (Յամաթո— Ճապոնիայի հնագույն անունն է)՝ քննադատում է բուրժուական փիլիսոփայության հիշյալ ուղղությունը:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՆԵՐԱՐԿՈՒՄ ԱՌԱՆՑ ԱՍԵՂԻ

*Մոսկվայի «Առողջապահություն—74» միջազգային ցուցահանդեսում ցուցադրրված է ատրճանականման մի սրսկիչ. այն իսկապես ատրճանակ է, որի «գնդակը» դեղն է, «վառոդը»՝ սեղմած օդի լիցքը։ Դեղը կարելի է սեղմած օդի օգնությամբ ներարկել մաշկի տակ, մկանային հյուսվածքի մեջ։ Փողը հպում են մաշկի այն տեղին, ուր պետք է լցնել դեղը, այնուհետև սեղմում են ձգանը. մի ակնթարթում բարձր ճնշումը լայնացնում է մաշկի ծակոտիները, և այնտեղ է լցվում դեղը։ Պրոցեսն ակնթարթային է, անցավ։*

### ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱՄԵՆԱԳՆԱՑԸ

*Լեհական կոնստրուկտորները գյուղական վայրերի համար ստեղծել են մարդաբեռնատար արագընթաց ու հզոր մի մեքենա։ Այն փոխադրում է վեց ուղևոր և 500 կգ բեռ։*

*«Տարպան» է կոչվում ամենագնացը։ Ինժեներներն օգտագործել են սերիական թեթև «Սիրենա» մեքենայի շասսին և «Ուրսուս» տրակտորի 45 ձիաուժանոց մոտորը։ 250 մեքենաներ արդեն հաջող փորձարկվել են։ Մեկ տարի հետո Պոզնանի մոտ գտնվող գործարանը տարեկան կթողարկի 10—15 հազար տարպաններ։*

### ԱՊԱԿԵԲԵՏՈՆԻ ՑԱՆՑԸ

*Ավելի քան 100 տարեկան է երկաթբետոնը։ Սակայն ինժեներները ջանում են կատարելագործել այդ շինանյութը։ Առաջնահերթ խնդիրներից մեկը այն թեթև ու դիմացկուն դարձնելն է։*

*Վերջերս Անգլիայում փորձարկվել է պորտլանդ ցեմենտից և ապակեթելի արմատուրայից կազմված շինանյութ։ Լցանյութը ոչ թե ավազն է կամ խիճը, այլ ապակու մանրագույն գնդիկները։ Այդ խառնուրդին ավելացնում են ջուր, ապա լցնում կաղապարի մեջ ու մամլում։ Ստացվում են շատ բարակ, բայց դիմացկուն պանելներ։ Դրանք թեթև են, ջերմաստիճանի փոփոխություններից չեն ճաքում, ունեն ջերմամեկուսիչ հատկություններ։ Դրանցից կարելի է պատրաստել բնակելի շենքերի երեսպատիչներ, ինչպես և ներքնապատեր։*

### ԹՈՒՂԹԸ ՆԱՎԹԻ ԴԵՄ

*Ջրի մակերեսին եղած նավթաբիծը կարելի է հավաքել թղթի օգնությամբ։ Փորձը կատարել են շվեդական և անգլիական մասնագետները։ Հին թերթերը, ստվարաթղթի կտորները, թղթի ֆաբրիկաների մնացուկները մանրացնում, դարձնում են 0,75—3 միլիմետրանոց բարակ շերտեր և թափում ջրը։ Այնտեղ դրանք կլանում են իրենց քաշից 28 անգամ ավելի նավթ։ Այնուհետև մամլիչով վառելիքը հեշտությամբ քամվում է։*

*Շուտով նեյլոնե «ցանցապարկերով» թղթաշերտերը կառաջարկվեն նավթալցանավերի վթարի ժամանակ նավթը ծովից հավաքելու համար։*

### ԼՎԱՑՔԻ ՎԱԳՈՆ

*Շվեդական «Վոշկատոր» ֆիրմայի մասնագետներն ստեղծել են ժամում մեկ և կես տոննա սպիտակեղենի արտադրողականությամբ նոր տիպի լվացքի մեքենա։ Գոյություն ունեցողներից այն տարբերվում է նրանով, որ թունելատիպ է, անընդմեջ գործող։ Ընդունիչ բունկերի մեջ անընդհատ կարելի է լցնել կեղտոտ սպիտակեղենը, իսկ հակառակ բունկերից ստանալ լվացվածը։*

*Լվացքի ողջ պրոցեսը ինը փուլ է, որոնցից յուրաքանչյուրը կատարվում է թունելի առանձին սեկցիայում։ Սպիտակեղենն ավտոմատ կերպով մի սեկցիայից անցնում է մյուսը։*